# ԴԵՊԻ ԺԱՄԲԱՐ

Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ

Սա այն ձորն է ծաղկազարդ,
Սա՝ այն գետակը զնգուն,
Որ կարկաչում էր զվարթ
Գիշեր, ցերեկ միշտ անքուն...

Այս բացատում լայնարձակ
Ինչքա՜ն ծաղիկ ենք քաղել,
Այս հաստաբուն ծառի տակ
Ինչքա՜ն խոսել, ծիծաղել...

Շատ անգամ ենք այս հովտում
Խարույկ վառել ոսկեհեր
Ու գիշերվա կապույտում
Մագլցել այս լեռն ի վեր...

Ամեն ինչ նույնն է կարծես,
Ու չի փոխվել ոչ մի բան,
Անցյալ տարվա գեղատես
Նույն պատկերն է բնության։

Նույն վրաններն են բազմած
Թավ անտառի լանջերին,
Նույն կայմերն են բարձրացած՝
Վառ աստղերը ծայրերին...

Շնկշնկալով սեգ սարից
Ցած է իջնում հովն անուշ,
Ու արթնանում է նորից
Հազար երազ, հազար հուշ...

Ողջո՜ւյն մեր հուր սրտերից,
Մեր ջինջ հոգուց կարոտած,
Քեզ ենք գալիս մենք նորից,
Մայր բնություն, գիրկդ բաց։

Նկ. Գ. ԱՂԱՍՅԱՆԻ

ՀԼԿԵՄ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՄԱՆԿԱԿԱՆ
ԱՄՍԱԳԻՐ




№ 6 1957 թ.
ՀՈՒՆԻՍ
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
29-ՐԴ ՏԱՐԻ

Դուք արթնանում եք քնից ու անմիջապես մտածում դպրոցի մասին, դասերի, ձեր ընկերների մասին, ձեր օղակի ու ջոկատի մասին: Երբ ձեզ գիրք է հարկավոր լինում, հայրիկը կամ մայրիկը ձեր ուզած գիրքը գնում են խանութից, կամ դուք վազում եք դպրոցական ու մանկական գրադարան, ուր ստանում եք ձեր ցանկացած գիրքը: Իսկ հանգստանալու համար գնում եք մանկական երկաթուղի, մանկական այգի, ամառները՝ պիոներական ճամբար, մանկական սանատորիա: Ձեզ համար պիոներների պալատ կա, պատանի տեխնիկների ու բնասերների կայաններ: Իսկ դուք գիտե՞ք, որ Կոլումբիայում ու Մեքսիկայում, Ամերիկայում ու Իտալիայում կամ կապիտալիստական մյուս երկրներում այդ բոլոր բարիքներից օգտվում են միայն հարուստների երեխաները, աղքատներն այնտեղ զրկված են դպրոցից ու գրքից, պիոներական ճամբարներից և մանկական այլ հիմնարկներից: Այդ դեռ բավական չէ. կապիտալիստներն անընդհատ մտածում են նոր պատերազմի մասին: Նրանք ուզում են որբացնել միլիոնավոր երեխաների: Բայց աշխատավոր ժողովուրդը թույլ չի տա, որ նոր պատերազմ հրահրեն: Ամբողջ աշխարհի աշխատավորները, Սովետական Միության ղեկավարությամբ պայքարում են, որ պատերազմ չլինի, պայքարում են ձեր երջանկության համար: Խաղաղասեր մարդիկ նույնիսկ երեխաների պաշտպանության օր են ստեղծել: Ամեն տարի հունիսի 1-ին աշխարհի բոլոր ծայրերում ծնողները դուրս են գալիս ցույցի և պահանջում, որ իրենց երեխաների ապագան լուսավոր լինի, որ իրենց երեխաներն էլ Սովետական Միության ու ժողովրդական դեմոկրատիայի երկրների երեխաների նման լինեն երջանիկ և ուրախ:




# 1917 թ. փետրվար

1917 թվականի փետրվարի 27-ը:

Այդ օրը Ռուսաստանում տապալվեց ցարը: Բանվորները և գյուղացիները ռևոլյուցիա կատարեցին: Սակայն մենշևիկների և էսեռների օգնությամբ իշխանությունը զավթել էր բուրժուազիան:

Բոլշևիկները ռևոլյուցիայի առաջնորդ Վ. Ի. Լենինի գլխավորությամբ աշխատավորներին կոչ էին անում շարունակել պայքարը:

Փետրվարյան ռևոլյուցիան եղավ Մեծ Հոկտեմբերի նախաբանը: Միայն Հոկտեմբերը բանվորներին և գյուղացիներին դարձրեց իրենց Հայրենիքի լիիշխան տերերը:

## ՊՈՒՏԻԼՈՎՅԱՆ ԳՈՐԾԱՐԱՆՈՒՄ ԳՈՐԾԱԴՈՒԼ Է

Փետրվարի 18-ին Պետրոգրադի Պուտիլովյան գործարանում գործադուլ բռնկվեց: Բանվորները պահանջում էին վերընդունել վերջերս ազատ փրձակած ընկերներին և բարձրացնել աշխատավարձը: Դիրեկտորը՝ գեներալ Դուբնիցկին, չէր ուզում նրանց լսել:

— Ես գործարանի տերն եմ — գոչում էր նա: — Հրամայում եմ՝ անմիջապես աշխատանքի անցնել: Եթե հրաժարվեք, կգնաք տուգանքային վաշտերը:

Բայց սպառնալիքները չվախեցրին:

Նույն օրը բոլշևիկ-հռետորներն ասում էին.

— Պետք է վերջ տալ պատերազմին, վերջ տալ ցարին: Թե ոտքի ենք ելնում, ապա ելնենք ամբողջ գործարանով, ամբողջ Պիտերով: Մի՞թե, մեր պահանջները բավարարելով, տերերը մեզ հաց կտան: Միայն ռևոլյուցիան կազատի մեզ:

Փետրվարի 21-ին 30 հազար պուտիլովականներ գործադուլ արեցին: Զինվորները չհարձակվեցին բանվորների վրա:

— Մենք ձեզ ձեռք չենք տա, — ասում էին նրանք.— ժամանակներն արդեն այն չեն: Մեզ 200-ական փամփուշտ են տվել ձեզ վրա կրակելու համար, իսկ թե ում վրա կարձակվեն նրանք՝ հայտնի չէ:

Գործադուլի մասին լուրը դիմավորվեց որպես վաղուց սպասված ազդանշան:

## ՆԱՐՎԱՅԻ ԴԱՐԲԱՍՆԵՐԻ ՄՈՏ

Վրա հասավ կանանց միջազգային օրը՝ փետրվարի 23-ը (նոր տոմարով՝ մարտի 8-ը): Բոլշևիկները աշխատավորներին կոչ արեցին՝ այդ օրը նշանավորել ցույցերով: Լքելով աշխատանքը, Պիտերի բանվորուհիները շտապեցին Նարվայի հրապարակ:

Ամբիոնի վրա երևաց բարձրահասակ, նիհար մի կին: Նա







թթվուտից մի քանի տեղ այրված չթե շոր և բամբակե բաճկոնակ էր հագել: Հաղթահարելով հագի նոպան, նա ասաց.

— Մինչև ե՞րբ մենք պետք է լռենք: Պատերազմը մարդու ներսը թթվուտից ավելի վատ է այրում: Երեխաների համար ոչ մի բան չկա ուտելու:

Ի պատասխան թնդաց.

— Գնանք դեպի Նևսկի: Հաց պահանջենք, խաղաղություն...

Ինչ-որ տեղից երևացին կարմիր դրոշներ, որ բարձրացրել էին կանայք: Նրանք երգում էին.

«Հրաժարվենք, ընկերներ, հին օրենքներից,

Թափ տանք նրանց փոշին մեր ոտքերից»:

Երգը բերնից-բերան անցավ, այն երգը, որ բանվորներին կոչում էր պայքարի.

## ԱՌԱՋԻՆ ՄԱՐՏԵՐԸ

Փետրվարի 25-ին Զնամենսկի հրապարակում հեծյալ ոստիկանությունը փորձում էր ցրել ցուցարարներին: Ջոկատի հրամանատար պրիստավ Կռիլովը քափքրտինք մտած, ձիով մտավ բազմության մեջ: Նեղելով բանվորներին, նա մոտեցավ դրոշը բռնած կնոջը և, դուրս քաշելով սուրը, հարթ կողմով հարվածեց գլխին: Այդ պահին ինչ-որ մի բանվորի դիպուկ նետած քարը կպավ ուղիղ պրիստավի գլխին: Նա երերաց: Հնարավորություն չտալով ուշքի գալ, բանվորները ձիուց ցած քաշեցին ցարի հավատարիմ ծառային և գցեցին Ֆոնտանկա գետը:

Ցարը ռազմաճակատից հուսալի զորքեր կանչեց: Մայրաքաղաքի կենտրոնը լավ ամրացված էր:

Երբ փետրվարի 26-ի առավոտյան ծայրամասից դեպի կենտրոն էին ձգվում բանվորների շարքերը, ժանդարմները նրանց դիմավորում էին գնդակների կարկուտով: Նևսկի պողոտան, Զնամենսկայա և Կազանյան տաճարի հրապարակները ներկվեցին արյունով:

## ԶԻՆՎՈՐՆԵՐԸ ՄԵԶ ՀԵՏ ԵՆ

Փետրվարի 26-ի երեկոյան Պարտիան որոշեց ուժեղացնել աշխատանքը բանակում:

Ուշ գիշերին Պուտիլովյան գործարանի բոլշևիկներին հաջողվեց թափանցել Վոլինյան գունդը: Կազարմայի անկյունում տեղի ունեցավ կարճ միտինգ, որտեղ զինվորները որոշեցին չըկատարել հրամանատարության հրամանները:

27-ի առավոտյան, երբ վաշտում հայտնվեց սպան և ասաց սովորական ողջույնը, ի պատասխան «առողջություն ենք ցանկանում» խոսքի, հնչեց «ուռա՜»:

— Այս ի՞նչ է նշանակում,— գոչեց սպան, ձեռքը տանելով դեպի ատրճանակը:

—Մենք չե՛նք ցանկանում ենթարկվել ձեր հրամանին:

Բանտարկելով սպաներին, զինվորները դուրս եկան փողոցները:

Այդ օրը 70 հազար զինվոր անցան ռևոլյուցիայի կողմը:

## ՎՃՌԱԿԱՆ ՄԱՐՏԵՐԸ

Փետրվարի 27-ին Վիբորգյան շրջանի բանվորները, իրենց ետևից տանելով զինվորներին, տապալեցին ժանդարմների շըղթան, որոնք պաշտպանում էին Լիտեյնի կամուրջը, և շարժվեցին դեպի քաղաքի կենտրոնը:

Նրանց միացան մյուս շրջանների բանվորները:

Առավոտյան մոտավորապես ժամի 10-ին ապստամբները գըրավեցին զինանոցը և վերցրին 40.000 հրացան:

Ամբողջ քաղաքը ապստամբեց:

Բանվորները և զինվորները, ձեռք ձեռքի տված մարտնչելով, ջախջախում էին ոստիկանական քաղաքամասերը, բանտերից ազատում էին ռևոլյուցիոներներին, բանտարկում էին գեներալներին և մինիստրներին: Նրանք աշխատում էին ոչնչացնել այն բոլորը, ինչ հիշեցնում էր ատելի ցարական կարգի մասին. կառավարական շենքերի տանիքներից գցում էին ցարական արծիվները, հանում եռագույն դրոշները, մաս-մաս պատռում, սպիտակ և կապույտ շերտերը մոլեգնորեն տրորում էին ոտքի տակ, իսկ կարմիրով զարդարում գլխարկները, կապում թևքերին, կամ լայն ժապավեն արած՝ գցում ուսով:

Երեկոյան դեմ մայրաքաղաքը գտնվում էր ապստամբների ձեռքին:

*Լ. ՎՈԼՖՈՎՍԿԱՅԱ*
*Լ. ՄԱՅՈՐՈՎ*
ՍՍՌՄ Ռևոլյուցիայի թանգարանի գիտական աշխատակիցներ







# Ժամանեց Լենինը

Վ. ԲՈՆՉ-ԲՐՈՒԵՎԻՉ

(Հիշողություններ)

1917 թվականի մարտի վերջերին մենք սկսեցինք տեղեկություններ ստանալ այն մասին, որ Վլադիմիր Իլյիչը ամենաեռանդուն միջոցներն է ձեռնարկում, որպեսզի հնարավորին չափ շուտ վերադառնա Ռուսաստան։ Լենինն այդ ժամանակ ստիպված էր ապրել արտասահմանում՝ Շվեյցարիայում։

Եվրոպայում իմպերիալիստական պատերազմ էր մղվում, պետությունների միջև փակ էին սահմանները, և այնքան էլ հեշտ չէր նրանց միջով անցնելը, իսկ Լենինի համար առավել ևս դժվար էր։ Մենք գիտեինք, որ Ֆրանսիայի և Անգլիայի կառավարությունները Ռուսաստանի ռազմական դաշնակիցներն են և վախենում են թույլ տալ հայրենիք վերադառնալու մի այնպիսի վտանգավոր ռևոլյուցիոների, ինչպիսին Լենինն է։ Ցարիզմի տապալումից հետո ստեղծված ժամանակավոր կառավարության օժանդակության վրա, իհարկե, հույս դնել չէր լինի։ Այդ կառավարությունը կազմված էր այնպիսի մարդկանցից, որոնք ծառայում էին բուրժուազիային։ Նրանք վախենում էին Լենինից և չէին ուզում նրա վերադարձը։

Մենք՝ բոլշևիկներս, ամենուրեք ռևոլյուցիոն աշխատանք էինք կատարում։ Այդ ժամանակ մեր ուժերը ավելացել էին. շատ ու շատ ընկերներ էին վերադարձել բանտերից ու աքսորներից։ Ժամանակը լարված ու եռուն էր, և մենք խիստ զգում էինք Լենինի կարիքը։

Եվ հանկարծ լուր ստացվեց, որ Վլադիմիր Իլյիչը արդեն Շվեդիայում է։ Շատ չանցած՝ լսեցինք, որ նա անցել է Ֆինլանդիա և, վերջապես, ապրիլի 3-ի երեկոյան կլինի Պետրոգրադում։

Մենք այդ մասին ուշ իմացանք և այն էլ հանգստի օրը։ Թերթերը լույս չէին տեսնում, գործարանները ու ֆաբրիկաները չէին աշխատում, փոստը փակ էր։ Բայց բոլշևիկների պարտիայի Պետրոգրադյան կոմիտեն կարողացավ Պիտերի և Կրոնշտադտի բանվորներին, զինվորներին, ու նավաստիներին տեղեկացնել Վլադիմիր Իլյիչի ժամանելու մասին.

Երեկոյան մոտավորապես ժամը յոթին մենք հավաքվեցինք Պետրոգրադի կոմիտեի շենքի մոտ և ծածանելով կարմիր դրոշը՝ շարժվեցինք դեպի Ֆինլանդական կայարանը։ Որքան մենք մոտենում էինք կայարանին, այնքան ավելի շատ բանվորների էինք հանդիպում։ Նրանք նույնպես գնում էին Լենինին դիմավորելու։

Գնալով, ժողովուրդը շատանում էր։ Կտրուկ քայլերով անցնում էին զորամասերը։ Որոտում էին փողային նվագախմբերը, հնչում էին ռևոլյուցիոն երգերը։

Ֆինլանդական կայարանի մոտի ամբողջ հրապարակը և այնտեղ մտնող փողոցները լցվել էին հազարավոր բանվորներով ու զինվորներով։ Նրանք եկել էին ողջունելու Լենինին, իսկ հարկ եղած դեպքում էլ՝ նրան ռևոլյուցիայի թշնամիներից պաշտպանելու։

Եկան հզոր զրահապատները։ Սկսեց մթնել։ Գնացքի ժամանմանը շատ քիչ էր մնացել։ Այդ ժամանակ երևացին ամբողջովին զինված կրոնշտադտյան նավաստիները։

Իմանալով, որ Պետրոգրադ է ժամանում Լենինը, նավաստիները «մարտական տագնապի» ազդանշան տվեցին և մի քանի րոպե հետո Կրոնշտադտի բոլոր նավաստիները արդեն պատրաստ էին։ Ֆին-





լանդական կայարանում պատվո պահակություն սահմանելու և Վլադիմիր Իլյիչին պաշտպանելու համար նրանք տեղն ու տեղը ջոկատներ կազմակերպեցին։

Ֆիննական ծոցը դեռևս չէր ազատվել սառույցից, և նավաստիներն իրենց ներկայացուցիչներին ուղարկեցին սառցահատով։ Նրանք հրաման էին ստացել կայարան ներկայանալ ժամանակին, չուշանալ։ Ժամանակ քիչ էր մնում։ Սառցահատը սրընթաց հասավ Պետրոգրադ։

Կրոնշտադտցիները եկան կայարան և պատվո պահակ կանգնեցին։ Մինչև գնացքի ժամանումը դեռ քսան րոպե կար։

— Ասացեք Վլադիմիր Իլյիչին,— դիմեց ինձ ծովայիններից մեկը,— որ նավաստիները խնդրում են մի քանի խոսք ասել իրենց։

Սպասումի վերջին րոպեները երկար տևեցին։ Եվ ահա վերջապես մշուշապատ հեռվում երևացին շոգեքարշի լույսերը...

Բոլորը նետվեցին դեպի վագոնները։ Շոգեքարշից հաշված, հինգերորդ վագոնից դուրս եկավ Վլադիմիր Իլյիչը, հետո՝ Նադեժդա Կոնստանտինովնան և էլի ուրիշ ընկերներ...

— Զգա՛ստ։— Հրահանգը հասավ պատվո պահակներին, կայարանում և հրապարակում հավաքված բանվորական զինված ջոկատներին...

Նվագախմբերը կատարեցին «Դիմավորումը» և զորքը պատվի առավ։

Անմիջապես ձայները լռեցին. միայն նվագախմբերն էին շարունակում նվագել։ Հանկարծ ամբոխը միանգամից իրար անցավ, ու որոտաց մի այնպիսի հուժկու և սրտառուչ «ուռա», որպիսին ես երբեք չէի լսել...

Վլադիմիր Իլյիչը ուրախ բարևեց մեզ և իրեն հատուկ արագ քայլվածքով առաջ գնաց, բայց այդ ժամանակ նորից պոռթկաց «ուռա»-ն։ Վլադիմիր Իլյիչը մի պահ կանգ առավ և շփոթմունքով հարցրեց.

— Սա ի՞նչ բան է։

— Ռևոլյուցիոն զորքն ու բանվորները ողջունում են ձեզ,— պատասխանեց ինչ-որ մեկը։

Վլադիմիր Իլյիչը հուզված անցավ պատվո պահակների առջևից։ Մենք մոտեցանք նավաստիներին։ Ես Իլյիչին ասացի, որ նրանք ուզում են լսել իրեն։ Վլադիմիր Իլյիչը կանգ առավ և ողջույնի խոսքով դիմեց նավաստիներին։

Երբ Վլադիմիր Իլյիչը դուրս եկավ կայարանի շքամուտքից, նորից պոռթկաց «ուռա»-ն։ Նվագախմբի ձայնը, ռևոլյուցիոն երգերն ու ողջույնի բացականչությունները միաձուլվում և մի այնպիսի հուժկու որոտ էին բարձրացնում, որ ասես օվկիանոսի ալիքներ լինեին։

Լուսարձակների շողքը մինչև երկինք էր հասնում։ Այդ անհանգիստ ու թրթռուն լույսը ստեղծել էր ինչ-որ առանձին տոնական տրամադրություն։

Վլադիմիր Իլյիչը բարձրացավ զրահապատի վրա։ Թնդաց ամբողջ հրապարակը և, ասես միանգամից բազմությունը լռեց։

Մի քանի վայրկյան հետո սկսեց խոսել Լենինը։ Տարագրության երկար տարիներից հետո դա նրա առաջին ելույթն էր ժողովրդի առաջ։ Նա բանվորներին, զինվորներին ու նավաստիներին իշխանության համար պայքարելու կոչ արեց։

Լենինը ճառն ավարտեց հետևյալ խոսքերով.

— Կեցցե՛ սոցիալիստական ռևոլյուցիան։



# Ծաղիկների տունը

Ե. ՄԱՆԱՐՅԱՆ

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Ծաղիկները։ Ի՜նչ լավն են ծաղիկները, ի՜նչ բուրավետ, ինչքա՜ն գեղեցիկ։ Կա՞ արդյոք մեկը, որ ծաղիկ չսիրի։ Հազիվ թե գտնվի այդպիսի մի մարդ։

Բայց Հասմիկին և նրա եղբորը՝ Սուրիկին, թվում էր, որ ամենից շատ իրենք են ծաղիկներ սիրում։ Նրանք թե՛ տանը, թե՛ դպրոցում խնամում և աճեցնում էին ամենազանազան, բազմագույն ծաղիկներ՝ածուներում և ծաղկամանների մեջ։ Նրանք երբեք ձեռք չէին տալիս մայթերի եզրերին և պուրակներում ցանած ծաղիկներին։ Նրանք գիտեին ծաղիկների մասին գրված բոլոր բանաստեղծությունները, գիտեին համարյա բոլոր երգերը և շատ հետաքրքիր հեքիաթներ դարձյալ ծաղիկների մասին։ Նրանք ունեին նաև պարտեզի և դաշտային ծաղիկների շատ նոխ հավաքածու։ Մի խոսքով՝ նրանց թվում էր, որ ամեն ինչ գիտեն։

Բայց ահա մի անգամ պարզվեց, որ քեռի Արամը ծաղիկների մասին գիտի մի այնպիսի հետաքրքիր պատմություն, որ նրանք չէին լսել։

Ահա թե ինչպես պատահեց այդ։

* * *

Կիրակի ցերեկ էր։

Շատ ուրիշ երեխաների նման Հասմիկն ու Սուրիկն էլ քեռի Արամի հետ գնացել էին օպերային թատրոն՝ «Անուշ» օպերան լսելու։ Հասմիկը ուրիշ անգամ էլ էր «Անուշը» լսել, իսկ Սուրիկը առաջին անգամն էր լինում օպերայում։

Շատ հետաքրքիր բաներ էին կատարվում բեմի վրա. գեղեցիկ երգեր էին երգում։ Բայց Սուրիկին ամենից շատ դուր եկավ, երբ գեղեցիկ հագնված աղջիկները, ծաղկեպսակները գլխներին և գույնզգույն ծաղիկներից փնջեր կազմած, ուրախ ու զվարթ երգում էին և խաղում։ Եվ ինչքա՜ն շատ ծաղիկ կար բեմի վրա, ինչքա՜ն ծաղիկ։

— Այդ ի՞նչ են անում, քեռի,—հարցրեց Սուրիկը ցածրաձայն։

— Ամառնամուտի տոնն է, երգում են, ուրախանում, — պատասխանեց քեռին։

Թե ինչ էր նշանակում ամառնամուտի տոն՝ Սուրիկը չհասկացավ, բայց այն երգը, որ երգում էին բեմի վրայի տղաներն ու աղջիկները, նա ուրիշ տեղ էլ էր լսել։ Այո՛, իհարկե։ Անցյալ տարի Ծաղկաձորում, երբ ինքը և Հասմիկը պիոներական ճամբար էին գնացել, հաճախ էին լսել այդ նույն երգը և դեռ իրենք էլ էին սովորել ու երգել։ Եվ ոչ միայն Ծաղկաձորում, իրենց տանն էլ էին երգում այդ երգը։ Երբ տոն օրերին բոլորը հավաքվում էին խնջույքի սեղանի շուրջը, սկսում էին երգել.

Համբարձում յայլա,
Յայլա, ջան յայլա...

Երգում էր մայրիկը, երգում էին մորաքույրները, քեռի Արամը և նույնիսկ հայրիկը։

Սուրիկը որոշեց օպերայից հետո անպայման քեռուն հարցնել, թե ի՞նչ տոն է ամառնամուտի տոնը։

— Ամառնամուտի տոնը ծաղիկների տոնն է, — ասաց քեռին ճանապարհին։

—Ծաղիկների տո՞ն,—զարմացավ Հասմիկը,—մի՞թե այդպիսի տոն կա։

— Այո, իհարկե։ Եվ դա շատ, շատ հին տոն է,—պատասխանեց քեռին։

— Իսկ ինչո՞ւ դու մինչև հիմա մեզ ոչինչ չես պատմել ծաղիկների տոնի մասին,—վշտացած ասաց Հասմիկը։

— Եթե ուզում եք, կպատմեմ։



* * *

— Սրանից հազարավոր տարիներ առաջ Հայաստանում, հենց այս նույն տեղերում, որ հիմա մենք ապրում ենք, ապրում էին մեր պապերի պապուպապերը։ Ապրում էին շատ հասարակ, հողաշեն կամ քարաշեն տներում և զբաղվում էին վար ու ցանքով կամ անասնապահությամբ, կովեր ու ոչխարներ էին պահում։

Եվ հենց որ գալիս էր գարունը, ու ձյունը հալչում էր, նրանք իսկույն դուրս էին գալիս դաշտ, սկսում էին աշխատել։

Սկսվում էր գարնանացանը։ Նրանք վարում էին հողը, ակոսներ փորում, սերմեր ցանում և նորից հողը ջուր տալիս սերմերի վրա։

Ինչ հեշտ է այսպես պատմելը, չէ՞։ Բայց աշխատելը դժվար էր, շատ դըժվար։ Ոչ տրակտորներ կային և ոչ էլ աշխատանքը հեշտացնող այլ գործիքներ։

Իսկ երբ նրանք վերջացնում էին գարնան վար ու ցանքը, օրերն էլ տաքացած էին լինում, սար ու ձոր, դաշտ ու անտառ ծածկված էին լինում թարմ, կանաչ խոտով։ Անուշ խոխոջում էին գլգլան առուները, երգում էին թռչունները, օրը պայծառ էր լինում, արևը՝ բարձր և ծաղիկներ, ծաղիկներ, հազար գույնի, անուշ հոտով, սիրուն տեսքով ծաղիկներ էին փռված լինում շուրջը։

Եվ ահա, ամեն տարի գարնանացանից հետո նրանք գնում էին դաշտերը՝ հանգըստանալու, ուրախանալու։

Երեխաները թիթեռնիկների պես ծաղկից ծաղիկ էին թռչում, քաղում, փընջեր կազմում, ավելի մեծերը ծաղկեպսակներ ու ծաղկեշղթաներ էին հյուսում, զարդարում իրենց գլուխն ու կուրծքը և գեղեցիկ երգեր երգում։ Իսկ հասակավորները զվարճանում էին և մտածում, թե ինչպես պիտի շարունակեն աշխատանքները, որ արտերը լավ ծլեն, առատ բերք տան, և իրենք ապահով լինեն ամբողջ տարին։

Այսպես անցնում էին տարիներ, տասնյակ ու հարյուրավոր տարիներ։

Մարդիկ արդեն գիտեին, որ երբ եղանակները լավ են լինում, ջրերը՝ առատ, արևը՝ պայծառ, իրենց ցանած սերմն էլ հպարտ դուրս է գալիս հողից, բարձրանում, հասունանում և առատ բերք տալիս։ Իսկ երբ ջրերը պակասում են, և արևն էլ սկսում է չափից ավելի այրել, կամ երբ կարկուտ և փոթորիկ է անում, բերքը փչանում է, և իրենք մնում են քաղցած։

Պետք էր մի բան անել, որ եղանակները լավ մնան, ու բերքն էլ չփչանա։ Բայց չէ՞ որ նրանք ոչինչ չէին կարող անել։

Նրանք, այդ հին ժամանակների մարդիկ, այնքան միամիտ էին և այնքան քիչ բան գիտեին աշխարհի ու բնության գաղտնիքների մասին, որ կարծում էին, թե արևը, քամին, ջրերը, հողը, ծաղիկները իրենց նման ամեն ինչ հասկանում են և, կարելի է գեղեցիկ երգերի ու փառաբանությունների միջոցով խնդրել, համոզել, կամ որևէ կերպ հասկացնել ջրերին, որ նրանք միշտ հոսեն, երբեք չցամաքեն, կարելի է հասկացնել արևին, որ նա միշտ այդպես պայծառ շողա, խնդրել հողին, որ նա սերմերը լավ պահի ու պահպանի իր կրծքի տակ, խնդրել երկնքին, որ նա փոթորիկ ու կարկուտ չուղարկի։ Ծաղիկների տոնի ժամանակ նրանք խընդրում էին բնությանը իրենց ցանած հատիկը բազմացնի, մեկը հարյուր անի, որ իրենց անասունները առողջ լինեն և նույնպես բազմանան, թռչուններն էլ իրենց բներում ձու ածեն և ձագեր հանեն, որ բոլորի համար լավ, պտղաբեր ու երջանիկ տարի լինի։

Ամեն տարի գարնանացանից հետո, ծաղիկների տոնին, երիտասարդ աղջիկ-



ները վերցնում էին մի կավե աման, պտտում էին դաշտերում, յոթ տարբեր աղբյուրներից ջուր էին լցնում այդ ամանի մեջ, հետո քաղում էին գույնզգույն ծաղիկներ, պսակներ հյուսում և զարդարում այդ կավե ամանը։ Իրենք էլ զարդարվում էին ծաղիկներով, ընկրսում էին ուրախ երգեր երգել և գովել իրենց դաշտերն ու անտառները, իրենց աղբյուրներն ու մարգագետինները, իսկ ամենից շատ գովում էին քաջ ու աշխատասեր տղաներին։

Երգերն ասելուց հետո, նրանցից ամեն մեկը ջրով լի այդ ամանի մեջ մի փոքրիկ նշան արած քար էր գցում, կամ մի որևէ այլ իր և նորից երգեր երգում։ Հետո բոլորը միասին վերցնում էին այդ ամանը, տանում թաքցնում հեռու մի տեղ, աստղազարդ բաց երկնքի տակ, որ վաղը նորից գան, վերցնեն ամանը և երգեր ասելով վիճակ հանեն։

— Դուք գիտե՞ք, ինչ բան է վիճակը,— հարցրեց քեռի Արամը։

— Վիճա՞կ։ Ոչ, ես չգիտեմ,— ասաց Սուրիկը,— Հասմիկ, դու գիտե՞ս։

— Ո՛չ, ես էլ չգիտեմ։

— Հիմա ես ձեզ կբացատրեմ,— ասաց քեռի Արամը։— Դուք երևի խաղացել եք այսպիսի մի խաղ։ Խաղի մասնակիցներից ամեն մեկը մի իր է պահ տալիս խաղը ղեկավարողին։ Հետո մասնակցողներից մեկի աչքերը թաշկինակով կապում են, և խաղը ղեկավարողը պահ տված իրերը մեկ-մեկ վերցնում է ու հարցնում. «Սրա տերը ի՞նչ անի»։ Նա, ում աչքերը փակել են, ասում է.

— Ես այդ խաղը գիտեմ,— վրա բերեց Սուրիկը,— ասում են. «Սրա տերը երգի» կամ՝ «Սրա տերը պարի» և շատ ուրիշ բաներ։

— Հենց այդ է, որ կա,— ասաց քեռի Արամը։— Այն ժամանակ էլ հենց այսպես էին անում։ Բերում էին մի փոքրիկ երեխա, որն ամանի միջից մեկ-մեկ հանում էր երեկվա գցած քարերը, իսկ իրենք զանազան երգեր էին երգում այդ քարի տիրոջ համար։ Պատահում էր, որ մեկի համար ուրախ երգ էին՝ երգում, իսկ մի ուրիշին տխուր երգ էր բաժին ընկնում։

— Օպերայում, Անուշի համար տխուր երգ երգեցին չէ՞, քեռի,— ասաց Հասմիկը։

— Այո, շատ ճիշտ ես նկատել,— պատասխանեց քեռի Արամը և շարունակեց։— Եվ այսպես, այդ օրերից էլ անցան շատ և շատ տարիներ։ Մեր պապերը արդեն հասկացել էին, որ հողն ու ջուրը, քամին ու ծաղիկները լեզու չեն հասկանում, և նրանցից որևէ բան խնդրելը անմտություն է։ Նրանք արդեն շատ էին զարգացել, բայց զարնան աշխատանքներն ավարտելուց հետո, առաջվա պես տոնում էին ծաղիկների տոնը, գովում ու փառաբանում էին աշխատասեր մարդկանց և ուրախ երգեր էին երգում։

Երբ դուք կմեծանաք, իմ սիրելիներ, ուրիշ շատ հետաքրքրական բաներ էլ կիմանաք ծաղիկների տոնի մասին։ Իսկ առայժմ հիշեք այսքանը։ Այդ տոնը եղել է աշխատասեր մարդկանց, ուրախ մարդկանց, իրենց հողն ու ջուրը, իրենց հայրենի աշխարհը սիրող մարդկանց տոնը։

Այդ օրը անհոգ, իսկապես ուրախ կարող էր դաշտերը դուրս գալ, ծաղիկներ քաղել, երգեր ասել միայն այն մարդը, ով լավ էր աշխատել մինչ այդ, ծուլություն չէր արել և որ մտադիր էր ավելի լավ աշխատել դրանից հետո, ամառվա ընթացքում։

Այդ տոնը եղել է ծաղիկների, ուրախ երգերի և զվարճությունների տոն։

Այսպես, Հասմիկն ու Սուրիկը ծաղիկների մասին մի նոր բան էլ իմացան։



## ԳՆԱՆՔ ԾԱՂԻԿ ՔԱՂԵԼՈՒ

Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Արամ, ո՞ւր ես մնացել,
Հերիք ինչքան մտար քուն,
Տես, ինչ վաղ է արթնացել
Արեգակը երկնքում...

Վե՛ր կաց, կանչիր Նորիկին,
Տես, որտե՞ղ է գիժ Սաքոն,
Իսկ ես գտնեմ Համլիկին,
Ու սար կգանք ձեր հետքով։

Գարնան սիրուն կանաչում
Վառ ծաղիկներ կփնջենք,
Առվակի մոտ կարկաչուն
Իրար այնքան կթրջենք...

Հետո նստած ծառի տակ,
Ծաղկեպսակ կհյուսենք՝
Կանաչ, կապույտ, սպիտակ
Կամ ինչ գույնի որ ուզենք...

Իսկ երբ արևը կամաց
Թեքվի՝ սարը ներկելով,
Մենք ձեռք-ձեռքի՝ շարք կազմած,
Ներքև կիջնենք երգելով...

Ու երբ հասնենք մեր բակին,
Երգով-պարով մտնենք տուն,
Ամեն մեկն իր մայրիկին
Կտա մի լավ ծաղկեփունջ...



# ԽՐԱՏԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Վ. ԱՆԱՆՅԱՆ

Նկ. Գ. ԽԱՆԱԶՅԱՆԻ

## ԸՆԿԵՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Վերադառնում էինք մի հեռու տեղից։ Ճամփից ոչ հեռու, սև ցելերում մի զույգ կարմիր բադ հանդիպեց. սերմ էին հավաքում գարնանամտի այդ մեղմ օրը։ Մեզ հետ որսորդ կար, որ բադերին տեսնելուն պես՝ սկսեց վերևից թմբկահարել մեքենայի կաբինը։ Վարորդը հասկացավ, արգելակեց մեքենան, և այդ պահին ականջիս տակ որոտաց հրացանը։ Բադերից մեկը թպրտաց սև հողին, իսկ մյուսը թռավ սարսափահար։

—Կրակի՞ր, երկրորդ փողից կրակիր,—ալեկոծված կանչեց ուղևորներից մեկը։ Իսկ որսորդը հանգիստ էր, կարծես որսը չէր փախչում իր ձեռքից։

—Կչա, ետ կգա... չարախնդորեն արտասանեց նա՝ նորից կրակելու պատրաստվելով։

Իրոք, փախած բադը ետ եկավ։ Եվ սրտակտուր կանչոցով՝ եկավ և արհամարհելով իր դահճի ներկայությունը, իջավ մեռնող ընկերոջ մոտ։

—Բա որ ասում էի՜...

Ու կրակեց երկրորդ փողից...

—Դրանք էդպես են՝ կարմիր բադերը։ Եթե զույգ են, մեկին սպանեցի՞ր, մյուսն էլ է քոնը։ Ետ է գալու,—բացատրում էր որսորդն իր ավարը տեղավորելով։ Եվ երբ մեքենան շարժվեց, նա կրկնեց իր միտքը.

—Էդպես է, դրանք ետ են գալիս։

## ԵՐԲ ՏԻՐԱՆՈՒՄ ԵՆ ՈՒՐԻՇԻ ՎԱՍՏԱԿԻՆ

Ամբողջ օրը, լեռան ժայռոտ լանջին շրջելուց հետո, հազիվ հաջողվեց մի կաքավ խփել։ Ջարդված թևը ծորն ընկավ։ Ցած վազեցի, որ վերցնեմ, բայց աղվեսն ինձնից շուտ հասավ։

Ա՛յ քեզ հրաշք... ամբողջ օրը ես կրակել եմ այստեղ, սրա ականջի տակ, ինչո՞ւ չի գլուխն առել-կորել։ Ա՛յ, դու խորամանկ, հասկացել է, որ կաքավների վրա եմ կրակում ու մի փչակում կուչ եկած՝ հարմար առիթի է սպասել, որ իմ որսը փախցնի։



Վրա հասավ, անամոթաբար վերցրեց կաքավն ու, պո՜ւկ...

Ա՛յ դու ավազակ, ո՞ւր ես տանում, ախր դա իմ ամբողջ օրվա աշխատանքն է։

Ծուխից կրակեցի՝ Թավալվեց։

Էհ, մեղքն իր վիզը, ուրիշի վաստակը չհափշտակեր՝ չէր պատժվի։



## ՎԵՐՋԱՊԵՍ

Ամառը հանգստանում էի Լոռու ձորում՝ Դեբեդի կանաչ ափին, մեղվաբուծական ֆերմայից ոչ հեռու։ Հաճելի էր այդ ձորում, ուր միայն գետի միալար վշվշոցն էր լսվում, մեկ էլ՝ մեղուների ախորժալուր բզզոցը։ Միայն երբեմն շրջապատի անդորրը խանգարում էր անցնող մի գնացք։ Նա վիշապի նման փնչալով սողում-աներևութանում էր մոտակա կեռմանի ետևը, ապա նորից վերականգնվում էր ձորի անդորրը։

Մեղվանոցի պահակը մի փոքրիկ կարմիր շուն ուներ, փոքրիկ, բայց շատ հպարտ։ Այնպես համարձակ էր նայում բակի կենդանիներին, կարծես նրանց տերը ինքը լիներ։

Ամեն անգամ գնացք անցնելիս, այդ շնիկը բարձր հաչոցով վրա էր հասնում ու հալածում՝ մինչև կեռմանի ետև աներևութանալը։ Եվ, որովհետև ոչ մի գնացք կանգ չէր առնում մեղվանոցի մոտ, շնիկն իր կյանքում կանգնած գնացք չէր տեսել և իր կարճ խելքով կարծում էր, թե իր գնացքները իրենից են փախչում՝ այդպես արագ խուճապով։ Ամեն անգամ գնացքը հալածելուց հետո, շնիկը վերադառնում էր հպարտ-հպարտ, պոչը ոլորած, մեջքին դրած ու արհամարհանքով նայում էր մեզ, որ կնշանակեր՝ «Իմ առաջ խակի էն ահագին վիշապը կանգ չի առնում, դուք ի՞նչ եք որ...»

Դեռ շատ կգոռոզանար այդ մեծամիտը, եթե մի դեպք չգար ասելու, թե որքան չնչին արարած է ինքը։

Մի օր էլ, երբ նորից հարձակվեց շոգեքարշի վրա, չկարողացավ զսպել իր թափը և ընկավ գնացքի առաջ, զույգ գծերի մեջտեղը։ Շոգեքարշը փնչոցով ու սուլոցով անցավ շնիկի վրայով։ Կենդանին երկու գծերի մեջտեղ ահից կուչ եկած, երևի կարծում էր, թե երկինքը փուլ է գալիս իր գլխին։

Եվ երբ գնացքն անցավ, ու ինքը նորից լույս աշխարհ դուրս եկավ, երկյուղով նայեց չորս կողմ ու պոչը ոտքերի արանքը կոխած, մինչև իր բույնը մի շնչում փախավ։

Այն էր ու այն, այդ շնիկն այլևս չէր հարձակվում գնացքների վրա։

Այդ դեպքից հետո միանգամից կոտրվեց շնիկի գոռոզությունը։ Մարդկանց ու կենդանիներին նա այլևս չէր նայում արհամարհանքով, վերևից։

Վերջապես հասկացել էր, թե ով է ինքը...





# ՓՈՍՈՐԱԿՈՒՄ

Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ
Նկ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ

Քաղաքամերձ տափաստանի մաշված արահետով շտապ ու գործնական քայլերով գալիս էր առևտրական Բուզարջոմեհրին, կես օրվա շոգին, իր թաղիքամանի սև կոստյումի մեջ եփվելով: Նա վերադառնում էր լոգանքից, որ ձրիաբար ընդունել էր մոտակա գետակում:

Եկամուտ չբերող հանգստյան այդ օրերին, երբ նրա խանութը փակ էր, նա շտապում էր խենճվելու սատրինճան, իր տնից վազեցնելով խանութի աշկերտ՝ Մոհսենին:

Տափարակի մեջ, մոտակա առվի խոնավությունից փլված, լայն ու ընդարձակ պնակի նման փոսի եզրերին, Բուզարջոմեհրին կանգ առավ. տնից վազող Մոհսենը հասավ տիրոջը:

Ցածր, փլվածքի մեջ, մի տղա երկաթե բրիչով փոսի պատն էր փորփրում:

—Այդ ի՞նչ ես փորում այդտեղ,—կանչեց Բուզարջոմեհրին:

—Այստեղ, հողի տակ, մի հին ծառի բուն կա,— գործն ընդհատելով ձայնեց տղան:

—Էլ ժամանակ չկորցնենք,— գործնական դարձավ նա աշկերտին,—հողի տակ մնացած այդպիսի ծառաբներից ինքնաեռի լավագույն կպչան կարելի է ստանալ: Միասին կփորեք: Շուտ արա... տես, չխաբի քեզ: Այս ասելով նա շուռ եկավ փլվածքում աշխատող տղայի կողմն ու ձայն տվեց.— Է՜յ... տղա՛... Մոհսենը կօգնի քեզ, միասին կփորեք: Դե, ես գնացի:

Մոհսենը ուրախ, որ ազատվեց իր՝ տիրոջ հետ լինելուց, ցած իջավ, իսկ Բուզարջոմեհրին պնակի եզրին քայլող ճանճի նման մի քիչ երևաց հորի բերանին ու... երբ Մոհսենը մի անգամ էլ նայեց վերև... տեսավ, որ տերը... թռել էր:

Որոշելու համար իր դիրքը, Մոհսենը մոտեցավ և ուշադրությամբ սկսեց զննել տղայի նիհար թևերը: Բայց որ կողմից էլ որ նայեց նրա բարակ թևերի վրա, մկանի ոչ մի նշույլ չտեսավ:

«Ես ավելի ուժեղ եմ նրանից»,— գոհունակությամբ եզրակացրեց Մոհսենը, ապա ասաց.

—Տո՛ւր փորեմ:

—Դեռ չեմ հոգնել. մի քիչ հանգստացիր:

Մոհսենը պառկեց ստվերում, փակեց աչքերը... Բայց վախեցած նորից բաց արեց, հիշելով տղայի ձեռքի երկար և սուր բրիչը:

Իր ֆիզիկական առավելությունը նրան չէր հանգստացրել. ամբողջ կյանքում նա վախեցել և շարունակ մտածել էր պաշտպանվելու մասին:

Քիչ հեռու, պատին կռթնած և ոտները ուղիղ պարզած, իսկական տիկնիկի պես, անշարժ նստած էր մի փոքրիկ տղա: Մոհսենը նոր նկատեց նրան.

—Դու ո՞վ ես:

Երեխայի դեմքի վրա ոչինչ չշարժվեց, բայց պայծառությունը հանկարծ չքացավ, կարծես մեկը դարձրեց էլեկտրական կոճակը: Դրանից նա այնքան փոխվեց, որ տղան անհանգստացած թողեց գործը և շտապեց փոքրին օգնության:

—Իմ եղբայրն է:

Ու երեխան նորից խաղաղվեց, պայծառացավ, փոքրիկ ծաղկամանի մեջ տնկած, նոր ջրված մարգարտածաղկի պես:

«Իսկ հիմա ո՞վ է ուժեղ,— նորից մտածեց Մոհսենը,—եթե ես կպչեմ մեծի հետ, փոքրը կարող է ոտներիցս բռնել... ես մեծին արագ ցած կգցեմ, հետո նրա հետ հաշիվս կմաքրեմ: Կամ առաջ փոքրին: Եթե մեծը բրիչով ուզենա կռվել, ես էլ քար կվերցնեմ»:

Տղան բրիչի համաչափ հարվածներով փորփրում էր հողը, որը փտած ծառարմատների հետ ցած էր թափվում:

—Դրանք հո փտած են,—անհանգստացած ասաց Մոհսենը:

—Փտա՞ծ են. սրանք դեռ արմատներն են: Տեսնենք, բունը գուցե փտած չլինի: Առվի ջուրն է փտեցրել:

—Որ փտած էր, ինչո՞ւ խաբեցիր:

Տղան զարմացած ու տխուր հայացք գցեց Մոհսենի վրա, բայց ոչինչ չասաց:

—Տո՛ւր ինձ բրիչը:

Տղան տվեց բրիչը:

Մոհսենն արագ ու անկանոն հարվածներով սկսեց քրքրել հողաշերտը։ Մեկ րոպե հետո նա արդեն հոգնել էր. նույն փտած արմատներն էին։

—Վերցրու ինքդ փորիր,— դարձավ նա տղային։

Տղան վերցրեց բրիչը և նույն համբերությամբ վերսկսեց աշխատանքը։ Նրա համաչափ հարվածներից կավահողի խոնավ շերտերը տաշեղների պես թափվում էին ցած։

Քիչ անց նա մի պահ կանգ առավ, ուշադրությամբ զննեց բացված արմատը, ապա մի ուշադիր հարվածով բրիչը գամեց արդեն նշմարված ծառաբնի մեջ։

Մոհսենը արագ ցատկեց տեղից և մոտեցավ։

—Ծառաբունն է...—ասաց տղան,—տե՛ս, կարծես փտած էլ չի։

—Թո՛ղ, ես կփորեմ...—վրա տվեց Մոհսենը և նորից նույն հապճեպությամբ հարվածեց ծառաբնին, փորփրելով և պոկոտելով տաշեղի կտորներ։

—Այդպես ոչինչ չի ստացվի,—ասաց տղան,—պետք է նախ ծառաբունը հողից հանել։

—Կստացվի...կստացվի... քո ի՞նչ գործն է,—բարկացած ասաց Մոհսենը,—սրան տես։ Այստեղ ուժ է հարկավոր։

Տղան ոչինչ չասաց, նա գնաց նստեց եղբոր կողքին և սկսեց նայել։

Քիչ անց Մոհսենը նորից հոգնել էր։ Նա հապճեպ իր մոտ հավաքեց պոկրտած տաշեղները և նստեց հանգստանալու։ Տղան մոտեցավ բրիչը վերցնելու։

—Թո՛ղ, ձեռք մի տուր... առանց քեզ էլ կարող եմ։ Թե չէ... բոլորը, ինչ որ դուրս գա, իմս է... Դուք թողեք տուն գնացեք։ Գիտես, որ քեզանից ուժեղ եմ։

Բայց երբ տղան գետնից բածրացրեց բրիչը և աներկյուղ նայեց նրան, Մոհսենը տեղից վեր ցատկեց իր հետ վերցնելով մի մեծ քար. հետո զգալով, որ վերցրած քարը չափազանց մեծ է, և որ դրանով չպիտի համարձակվի հարվածել դիմացինին, ցած նետեց այն և ավելի փոքրը վերցրեց։

—Քարը ցա՛ծ գցիր,—հրամայեց տղան։

—Սրա՛ն նայիր... չեմ գցի։

Բրիչը ձեռքում սեղմած, տղան սկսեց մոտենալ։ Մոհսենը մի քանի քայլ նահանջեց, ապա վախեցած մի կողմ շպրտեց քարը։

Իր կյանքում նա բոլորից էլ վախեցել էր, բոլորն էլ իրենից ավելի ուժեղ էին եղել և իրենց ուժը ցույց էին տվել։ Այդ օրը նա գուցե առաջին անգամ կյանքում իրեն հակառակորդից ավելի ուժեղ էր զգացել։ Բայց դա շատ կարճ տևեց. նա առանց երկար մտածելու հրաժարվեց այդ անսովոր մտքից։

Մի փոքր դադարից հետո, նրանք առանց խոսք փոխանակելու, վերսկսեցին աշխատանքը։ Բայց Մոհսենը դեռ մի տեսակ դժգոհ էր, վրդովված։ Երբ մեկը հոգնում և թողնում էր բրիչը, մյուսը իսկույն փոխարինում էր։ Տղան աշխատում էր ամենաիսկական ձևով։ Դժվար էր ասել, նա դանդա՞ղ էր աշխատում, թե արագ, բայց նա գիտեր ինչպես և ուր պետք է ուղղել բրիչի հարվածը։

Սկզբում դեռ Մոհսենը չէր հասնում ընկերոջը, շտապում էր, շփոթվում և արդյունքն էլ այն չէր։ Հետո նա հանկարծ զգաց մի տեսակ թեթևություն, նրա դժգոհությունն ու վրդովվածությունը չքացան։ Նրան այդ անծանոթ ու աշխատասեր տղան հանկարծ դուր եկավ։ Նա ընկավ իրեն համար բոլորովին նոր, բայց հարազատ մի տրամադրության մեջ, մերվեց տղային ու նրանք սկսեցին աշխատել միասին։

Երբ երկուսն էլ բավական հոգնել էին, տղան ցած դրեց բրիչը և ասաց.

—Մի քան ուտենք։

Ապա նա մոտեցավ եղբորը, նրա կողքից վերցրեց մի փոքրիկ կապոց, բաց արեց, այնտեղից հանեց կես սանգակ ու մի կտոր պանիր, ապա ծալապատիկ նստեց գետնին։

Մոհսենը մի տեսակ անհարմար վիճակի մեջ ընկավ. մեքենայաբար գետնից բարձրացրեց բրիչը։



Նա քաղցած էր, բայց շատ ավելի ուրախ կլիներ, եթե տղան չընդհատեր աշխատանքը։ Նա կանգնած մնաց հենվում և սկսեց խաղ անել բրիչի կոթի հետ։

—Ե՛կ,—դարձավ նրան տղան։

—Չէ՛, չէ՛,—ասաց Մոհսենը, բայց ընազդաբար, արագ մոտեցավ, նստեց տղաների կողքին և սկսեց ուտել։

Ու անմիջապես էլ զգաց, որ ոչ մի անհարմար բան չկար։ Չէ՞ որ իրենք միասին էին աշխատում։





Քիչ անց նրանք վերսկսեցին աշխատանքը։ Հողի միջից հանեցին ծառաբունը, մեծ դժվարությամբ ճեղքեցին այն և բաժանեցին երկու հավասար մասի։ Տղան ասաց.

—Մեկը քեզ, մյուսը ինձ։

Մոհսենը ուրախ էր և գոհ։

—Հե՜յ... որտեղի՞ց ցած իջնեմ...—լսվեց վերևից Բուզարքոմեհրու ձայնը։

—Ա՛յ, այն կողմից,—կանչեց տղան, մատնացույց անելով դեպի ցած երկարող փոքրիկ արահետը։

Բուզարքոմեհրին զգուշությամբ սկսեց ցած իջնել։ Երբ նա հասավ երեխաներին, գրպանից հանեց ճըմըրթված մի մեծ թաշկինակ, սրբեց քրտինքը, ապա զըննելով փայտի կտորները, ձեռնափայտով փորփրեց և գոհ անաց.

—Ա՛յ, լավ է։ Շատ լավ։ Մենք վաղը այլևս չենք գա այստեղ։ Վաղը դու մենակ կաշխատես, իսկ այստեղ դեռ շատ ծառաբներ կան։ Այնպես որ, այսօր մենք այս երկու կտորն էլ կվերցնենք, իսկ վաղը ինչ որ հանես, բոլորը թող քեզ մնա։ Դե Մոհսեն, շուտ արա, մեկը ես կվերցնեմ, մյուսը՝ դու։

—Բայց մենք միասին ենք աշխատել, արբաբ,—բողոքեց Մոհսենը,—միայն մեկն է մերը... մյուսը նրանցն է։

Դու շատ մի խոսիր։ Վերցրո՛ւ։

Երկու եղբայրները կանգնած էին կողք կողքի՝ հոնքերը կիտած և տխուր։

—Միայն մեկը վերցնենք, արբաբ,—խնդրեց Մոհսենը։

Բայց Բուզարքոմեհրին արդեն ուսին էր տեղավորել փայտերից մեկը։

—Շո՛ւտ արա,—հրամայեց նա։

Մոհսենը տխուր նայեց եղբայրներին։

Այնպես լավ էր քիչ առաջ։ Աշխատում էին, հետո նստեցին ուտելու, հանեցին ծառաբունը, բաժանեցին երկու հավասար մասերի։

—Շո՛ւտ արա,—նորից հրամայեց Բուզարքոմեհրին։

Բայց Մոհսենը կարծես չլսեց նրան։ Նա գլխիկոր, անսպասելիորեն շրջվեց և սկսեց հեռանալ։

—Այդ ո՞ւր,—գոռաց տերը,—սպասի՛ր, վերցրո՛ւ։

Մոհսենը չպատասխանեց. նա գնաց դեպի վեր տանող արահետը, մի պահ նա երևաց վերևում, ապա տեսողությունից թաքնվեց։ Փոսորակից, ինչպես կաթսայի միջից, լսվում էր տիրոջ սպառնագին գոռգոռոցը, բայց Մոհսենը չէր լսում նրան։ Նա քայլում էր դեպի հորիզոնը, ուր դաշտերը այնպես հարթ ու հավասար էին երևում։ Նա մտածում էր, թե ինչպես այդ օրը աշխատեց այն տղայի հետ, նրա հետ միասին հաց կերավ, հետո ինչպես հողից հանեցին ծառաբունը և բաժանեցին երկու ամենահավասար մասերի։




*Ա. ՍԱՐՈՅԱՆ*

Պատմագիրները ասում են, որ դեռևս մեր թվարկությունից առաջ, հայ իշխաններից մեկը՝ Վարդգեսը, Արարատների դեմ-դիմաց, Քասախ գետի մոտ կառուցեց մի ավան, որը նրա անունով էլ կոչվեց Վարդգեսավան։

Անցան դարեր...

Եվ ավելի քան 1800 տարի առաջ, հայոց Վաղարշակ առաջին թագավորը ամուր պարիսպներով պատեց Վարդգեսավանը, դարձրեց քաղաք։ Այսպես հիմնադրվեց Հայաստանի հնագույն քաղաքներից մեկը, որը հետագայում կոչվեց Էջմիածին։

Ավելի քան 2500 տարիների ընթացքում աննշան փոփոխությունների ենթարկվեց Էջմիածինը։ Կողք-կողքի ձգված, իրար կպած ու հողաշեն տների ֆոնի վրա դեռ հեռվից երևում էին միայն հայ ժողովրդի բազմադարյան արվեստի անխոս վկաները՝ Էջմիածնի եկեղեցիները։ Ուրիշ ոչինչ։

* * *

—Էդ ի՞նչ եք նայում, բալիկներս,—լարված հետաքրքրությամբ քաղաքը դիտող կարմիր վզկապավորներին դիմեց մի մարդ՝ ծերունական ժպիտը դեմքին։—Էնպես եք նայում, կարծես առաջին անգամ եք տեսնում Էջմիածինը։

—Մեր պիոներական ջոկատը Երևանից է եկել, պապի, և իրոք առաջին անգամ ենք լինում ձեր քաղաքում,—բոլորի փոխարեն պատասխանեց ջոկատավարը։

—Հա՜ ա՜ ա՜,—ծոր տվեց ծերունին։—Դե որ էդպես է, բարով եք եկել։ Լավ ծանոթացեք մեր քաղաքին։ Տեսնելու շատ բան կա։

—Ուստա Հրաչը մեր քաղաքի ամենահին բանվորն է, արհեստավորը,—ծերունուն ներկայացրեց նրա կողքին կանգնած, միջին տարիքի մի տղամարդ, որ ինչպես հետո պարզվեց, Էջմիածնի քաղաքային սովետի Գործկոմի նախագահ Հովհաննես Հովհաննիսյանն էր։—Վատ չէր լինի, եթե քաղաքին ծանոթանալուց առաջ Ուստա Հրաչը ձեզ մի փոքր պատմեր նախկին Էջմիածնի մասին։

Պիոներական ջոկատը ծերունու առաջնորդությամբ դուրս եկավ փողոցից և մտավ գեղեցիկ զբոսայգին։ Ուստա Հրաչը նստեց նստարաններից մեկի վրա, իսկ երեխաները շրջապատեցին նրան։

—Պապի, Էջմիածնում առաջ քանի՞ գործարան կար,—հարցրեց Սուրիկը։

—Երկու,—խորհրդավոր ժպտալով պատասխանեց Ուստա Հրաչը,—մեկը իմն էր, մեկն էլ՝ Ուստա Սարգսինը։

—Բանից պարզվում է, որ այս պապին առաջ գործարանատեր է եղել,—կողքի ընկերոջ ականջին շշնջաց Վահանիկը։

—Իսկ քանի՞ բանվոր ունեիք ձեր գործարանում,—նորից հարցրեց Սուրիկը։

—Ե՛վ իմ, և՛ Ուստա Սարգսի գործարանում աշխատում էին մեկական բանվոր։

Պիոներները զարմացած իրար նայեցին, իսկ ծերունին հանգիստ նստած, մեղմորեն ժպտում էր։

—Բա այդպես էլ գործարան կլինի՞,—իր զարմանքն հայտնեց Ռուբիկը։—Հայրս աշխատում է

Երևանի Հաստոցաշինական գործարանում. այնտեղ հազարավոր բանվորներ կան։ Իսկ ծերը...

—Դե ես ի՞նչ անեմ, որ մերն էդպես էր,—ընդհատեց ծերունին և ապա մի փոքր լռությունից հետո ավելացրեց.—Ախր էնպիսի հարց եք տալիս, որ մարդու ծիծաղ է գալիս։ Առաջ էջմիածնում ի՞նչ փործ ուներ գործարանը։ Կար միայն երկու փոքրիկ արհեստանոց, մեկը՝ իմը, մեկն էլ՝ Ուստա Սարգսինը։ Մենք էինք նորոգում էն ժամանակվա ավտոները, այսինքն՝ սայլերն ու ֆայտոնները։

Պիոներները բարձրաձայն ծիծաղեցին։

—Պապի՛, իսկ հիմա էջմիածնում գործարաններ կան չէ՞,—լսվեց պիոներներից մեկի ձայնը։

—Իհարկե, կան։ Մեխանիկական գործարանը՝ մեկ, Տեղարդ կոմբինատը՝ երկուս, Հացի գործարանը՝ երեք, Գորգագործական արտելը՝ չորս, Լիմոնադի գործարանը՝ հինգ...Հա, քիչ էր մնում մոռանայի ամենամեծը՝ Գինու գործարանը, նա էլ՝ վեց։—Արդյունաբերական յուրաքանչյուր ձեռնարկության անուն արտասանելիս Ուստա Հրաչը ծալում էր ձեռքերի մատներից մեկը։

—Պապի՛, քանի՞ հարյուր տարվա պատմություն կունենա այս եկեղեցին,—ձեռքը դեպի ծառերի ճյուղերի արանքից երևացող տաճարի գմբեթը պարզելով, հարցրեց Անահիտը։

—Հին է, շա՜տ հին, հազար տարվա պատմություն ունի, դեռ ավելի։ Էդ մանրամասնությունները շատ լավ գիտե ընկեր Հովհաննիսյանը. հիմա կկանչեմ, թող ձեզ պատմի,—ասաց ծերունին և շուռ գալով դեպի մայթը, ձայնեց Քաղսովետի նախագահին.

—Ընկեր Հովհաննիսյան, պիոներները քեզ նեղում են, հասիր օգնության։

Եկավ ընկեր Հովհաննիսյանը և իմանալով երեխաներին հետաքրքրող հարցի մասին, բարեհամբույր ժպտալով պատասխանեց.

—Պատմագիրների վկայությամբ էջմիածնի տաճարը կառուցվել է մեր թվարկության 303 թվականին։

—Ինչքա՜ն հին է,—զարմանքից լայն բացվեցին Անահիտի աչքերը։

—Այո, ավելի քան 1650 տարվա պատմություն ունի։

—Քեռի, իսկ սրանից ավելի հին եկեղեցիներ էլ կա՞ն էջմիածնում,—հետաքրքրվեց Սուրիկը։

—Չէ՛, ամենահինը սա է։ Հռիփսիմեի տաճարը, որ տեսած կլինեք էջմիածին մտնելիս, կառուցվել է 618 թվականին, իսկ Գայանեի տաճարը՝ նրանից մի 12 տարի հետո։ Բայց դրանք բոլորն էլ վկայում են շինարարական արվեստի մեջ դեռ հնում հայերի ունեցած հմտության և նուրբ ճաշակի մասին։

—Իսկ այն շենքն ի՞նչ շենք է,—էջմածնի տաճարից քիչ հեռու գտնվող շինությունը ցույց տալով, հարցրեց Ռուբիկը։

—Դա էլ նախկին Գևորգյան ճեմարանի շենքն է, լսած կլինեք։ Այստեղ են սովորել մեծ բանաստեղծներ՝ Հովհաննես Հովհաննիսյանը, Ավետիք Իսահակյանը...

—Կոմիտասը,—ավելացրեց Անահիտը։

—Այո՛, այո՛, շատ անվանի մարդիկ է տվել էջմիածնի Գևորգյան ճեմարանը,—ասաց ընկեր Հովհաննիսյանը։

Երեխաները ուրիշ շատ այսպիսի հետաքրքրա-



*Նորակառույց ակումբը*

կան նորություններ իմացան Էջմիածնի մասին և շնորհակալություն հայտնելով ծերունուն ու Քաղսովետի նախագահին, դուրս եկան զբոսայգուց, սկսեցին շրջագայել քաղաքում։

Անցան նրանք Միկոյան պողոտայով, Մյասնիկյան և Աթարբեկյան փողոցներով։ Փողոցներն ասֆալտապատ էին, ծառազարդ։

Էջմիածնում շրջագայելիս պիոներներն իմացան, որ առաջ քաղաքի բոլոր փողոցներն էլ կոչվում էին «քուչաներ»։ Դե, ասենք, իսկական քուչաներ էին. մեկը մեկից նեղ, մեկը մեկից ծուռումուռ և մեկը մեկից խորդուբորդ։ Միայն 1939 թվականից, երբ հաստատվեց քաղաքի վերակառուցման գլխավոր հատակագիծը, բարեկարգված փողոցներն ստացան



*Հյուրանոցի նոր շենքը*

*Լուսանկարները՝* ***ՆԵՄՐՈՒԹԻ***

իրենց անունները ու համարները։ Այժմ Էջմիածնում կա 54 բարեկարգ փողոց, որոնցից մի մասն արդեն ասֆալտապատված է։

Քաղաքի լավագույն շենքերը դպրոցներինն են. մեկը մյուսից գեղեցիկ, մեկը մյուսից լուսավոր։

Ահա Մոլոտովի, Միկոյանի, Խաչատուր Աբովյանի, Հովհաննես Հովհաննիսյանի անվան ռուսական ու գիշերային բաներիտ միջնակարգ դպրոցները, որտեղ 3500-ից ավելի երեխաներ են սովորում։ Միջնակարգ դպրոցներից բացի, Էջմիածինն ունի նաև ֆիզկուլտ-մանկավարժական ուսումնարան, երաժշտական յոթնամյա դպրոց, գիտա-հետազոտական ինստիտուտ...

Էքսկուրսանտները մեծ հետաքրքրությամբ դիտեցին Էջմիածնի կուլտուրայի տունը, որն ունի երգիպարի ու թատերական ինքնագործ խմբակներ, ժողովրդական գործիքների անսամբլ, շախմատի ու շաշկու խմբակներ, ամառային ու ձմեռային պարասրահներ, ընթերցարան, գրադարան, ամառային ու ձմեռային կինո-թատրոնների դահլիճներ։ Նրանք հիացմունքով դիտեցին նաև արդեն շահագործման հանձնված Էջմիածնի Միկոյանի անվան կոլտնտեսության Կուլտուրայի տան նորակառույց շենքը։

Տարեցտարի բարեկարգվում, գեղեցկանում և կուլտուրայի նորանոր օջախներով հարստանում է Էջմիածինը։ Ավելանում է գրադարանների քանակը։ Կուլտուրայի տան գրադարանից բացի գրադարաններ կան նաև դպրոցներում, գործարաններում, Մեքենա-տրակտորային կայանում։ Սակայն ամենախոշորները՝ դրանք երկու մանկական և քաղաքային գրադարաններն են։

Փողոցից փողոց անցնող էքսկուրսանտների հայացքի դեմ իրար հաջորդելով բարձրանում էին վարդագույն ու սրբատաշ քարերից կառուցված գեղեցիկ, բազմահարկ տներ։ Միայն վերջին տարիներին այստեղ պետական միջոցներով կառուցված է 10 նոր խոշոր շենք։ Իսկ ինչքա՞ն նոր տներ են կառուցել իրենք՝ Էջմիածնի բնակիչները։

Նորակառույց շենքերի մոտից անցնելիս՝ պիոներները հետաքրքրությամբ նայում էին գեղեցիկ շենքերին և ուշադրությամբ կարդում մուտքերի մոտ փակցված ցուցանակները։ «Շրջանային հիվանդանոց», «Պոլիկլինիկա», «Էջմիածնի քաղաքային հյուրանոց»։

Դպրոցականները երկար շրջեցին քաղաքում։ Եվ երբ վերադառնում էին էքսկուրսիայից, Ռուբիկը դառնալով ընկերներին, ասաց.

—Մեր Երևանի նման Էջմիածինն էլ է կառուցվել ու գեղեցկացել։



Գ. Ճալայան

Ծառ (էտյուդ)



Գ. Մալայան — Հին Երևանը

# ՈՐԴՈՒՍ

ՍԱՐՄԵՆ

Մանուկ օրից սիրիր բարին,
Ազնվության ձգտիր միշտ,
Թեկուզ քո մեծ ճանապարհին
Լինեն խութեր, ցավ ու վիշտ։

Ծուռ մեծացած ծառն էլ երբե՛ք
Թեքել-ուղղել չես կարող,
Կյանքին միայն այն մարդն է պետք,
Որ քաջ է ու պայքարող։

Դու մի՛ փախիր աշխատանքից,
Բարիքների մայրն է նա,
Թե ուզում ես բախտ խնդալից,
Քրտինք թափիր հենց հիմա։

Մի՛ վատնիր քո օրերն անցին,
Գնացածը ետ չի գա,
Երբ գործն անես ժամանակին,
Դրանից լավ բան չկա։

Կյանք-ուսուցիչն է ինձ ասել
Այն, ինչ որ քեզ պատմեցի.
Նա է տալիս փորձված դասեր,
Թե՛ փոքրերին, թե՛ մեծին։

Ով լսում է այդ հեղատես,
Այդ իմաստուն ծերուկին,
Նա սիրում է նրան այնպես,
Ինչպես հայրն իր զավակին։

Իսկ իրեն դեմ գնացողին,
Ինչ էլ լինի, անպատճառ,
Մի օր պիտի զարկի գլխին,
Պատժի, պատժի չարաչար։

# Ժամանակի մեքենան



ՎԻԿՏՈՐ ՍԱՊԱՐԻՆ

Նկ. Գ. ԱՂԱՍՅԱՆԻ

Երբ Պետյան սենյակ մտավ, տեսավ, որ ճաշասեղանը «գլխիվայր» շուռ էր տրված, իսկ մի ոտքին ամրացված էր մսաղացը: Կոլյան նստել էր սեղանի վեր ցցված ոտքերի միջև և եռանդով պտըտում էր մսաղացի կոթը։

— Դա ի՞նչ է,— հարցրեց Պետյան:

— Ժամանակի մեքենա,— պատասխանեց Կոլյան շատ հանգիստ:

— Իսկ ինչի՞ համար է:

— Կարելի է ճամփորդել թե՛ դեպի անցյալը, և թե՛ ապագան:

— Դե, անցյալը կինոնկարներում էլ կարելի է տեսնել: Իսկ ինչ վերաբերում է ապագային, դա հետաքրքիր է: Բայց ինչպե՞ս կճամփորդես:

— Ահա ղեկը,— ցույց տալով մսաղացի կոթը՝ հանդիսավոր կերպով ասաց Կոլյան,— բայց ինչքան պտտում եմ, մեքենան տեղից չի շարժվում: Մի բան պակաս է: Ահա թե ինչ: Պետք է անտենա ավելացնել,— նա ցույց տվեց հեռուստատեսի վրայի երկթևանի անտենան:— Արի միասին խաղանք:

— Արի:

Տղաները անտենան ամրացրին սեղանի ազատ մնացած ոտքին:

— Սա արդեն ուրի՜շ բան է,— գոհունակ ասաց Պետյան:— Դե փորձիր:

Կոլյան պտտեց մսաղացի կոթը:

— Հիմա աշխատում է: Նստիր, թե չէ կմեկնեմ:

Պետյան շտապ տեղավորվեց Կոլյայի կողքին, և սեղանը, կարծես թե, թռավ ինքնաթիռի նման:

— Ու՞ր ենք գնում:

— Տաս տարով դեպի առաջ: Սպասիր, մի՛ շփոթեցնի,— պատասխանեց Կոլյան և սկսեց բարձրաձայն հաշվել պտույտները:

— ... յոթ, ութ, ինը ...

Տասը պտույտ հաշվելուց հետո Կոլյան դարձավ դեպի ընկերը.

— Ամուր բռնիր: Լսու՞մ ես քամու սուլոցը: Երկուսով կպել էին սեղանի ոտքերին, և ասես թե, իրոք, քամու ձայն էր հասնում նրանց ականջներին:

— Ախր ինչի՞դ է պետք տաս տարով առաջ վազել,— հետաքրքրությունից ուղղակի այրվելով, անհանգիստ հարցրեց Պետյան:

— Գործ ունեմ, ուզում եմ մարտկոց գնել:

— Է՜հ, դու էլ բան ասացիր: Դրանից հիմա է

խանութներում լիքն է: Տասնվեց ռուբլի փող տուր՝ առնեմ:

— Դու ի՞նչ ես հասկանում որ,— արհամարհանքով ասաց Կոլյան:— Ես հավերժական մարտկոց եմ ուզում, հավերժական, է՛...



— Ու՞ր է թե էդպիսի բան լիներ,— երազկոտ տոնով արտասանեց Պետյան:— Էդ բոլորը հնարում ես, չէ՞:

— Դու ոչինչ չես հասկանում: Ես ժուռնալներում եմ կարդացել: Այնտեղ նույնիսկ նկարը կար:

— Լավ, ասենք, թե այդպիսի մարտկոց արդեն ունենք, հետո՞:

— Հիմա էլ ատոմային սառցահատով ման գանք: Բայց դրա համար պետք չէ այդքան շատ առաջ գնալ: Այժմ հարկավոր է հինգ տարով ետ վերադառնալ: Պտտենք հինգ անգամ և վերջ:

— Հո՛պ: Պատրաստ է,— ասաց Պետյան,— միայն թե, որտեղի՞ց սառցահատ վերցնենք:

— Հը՛մ,— Կոլյան նայեց շուրջը: Նրա կարծիքով ինքը բավական շատ բան գիտեր ատոմի մասին, իսկ կյանքում ոչ միայն սառցահատ, այլև առհասարակ նավ չէր տեսել: Բայց դա նրան չխանգարեց. իզուր չէր, որ նա այդքան գրքեր էր կարդացել ծովային ճանապարհորդությունների մասին:— Հիմա կսարքենք:

Նրա աչքին ընկավ կապույտ էլեկտրալամպի ռեֆլեկտորը, որը դրված էր պահարանում:

— Գնա բեր և կապիր մյուս ոտքին,— հրամայեց Պետյային,— դա կլինի լուսարձակը: Նավարկելու ենք գիշերով, իհարկե, բևեռով: Սառույցները կպըսպըղան էլեկտրական լույսի շողերի տակ:

Մինչդեռ Պետյան բարեխղճորեն լուսարձակն էր հարմարեցնում, Կոլյան վազեց խոհանոց և վերադարձավ՝ էմալե սափորը ձեռքին: Նա բերածը անցկացրեց սեղանի չորրորդ, ազատ մնացած ոտքին, ապա վերցրեց խմորխառնիչը և սկսեց հարվածել: Սափորը խլացնող ձայներ էր արձակում:

— Սա էլ զանգն է,— բացատրեց Կոլյան:— Նավերի վրա միշտ էլ զանգ են խփում...

Քիչ հետո Կոլյան տվեց մեկնելու հրամանը: Բայց այդ ժամանակ Պետյան հանկարծ բողոքեց: Թեև Պետյան տարիքով ավելի փոքր էր, սակայն կյանքի մեծ փորձ ուներ, հատկապես ծովագնացության գործում: Նա անցած ամառ հյուր էր գնացել Արխանգելսկում ապրող իր մորաքրոջը և շատ էր եղել նավահանգստում:

— Նախ հարկավոր է բունկերները ածուխ լցնել,— ասաց նա:— Արխանգելսկում մի ամբողջ շաբաթ, ես ամեն օր նավահանգիստ էի գնում: Նավի մեջ այնքան ածուխ էին լցնում ո՜ր... մեր տան չափ:

— Այո՛,— ասաց Կոլյան ցավակցաբար նայելով Պետյային,— ես տեսնում եմ, որ դու հետամնաց մարդ ես:

— Ինչու՞ ես այդպես ասում:

— Որովհետև հին բաների մասին ես պատմում:

— Բոլորովին էլ հին չէ. անցած տարի եմ տեսել:

— Ախր ես ու դու մի քանի տարով առաջ ենք գնացել, և մեր սառցահատը սովորական չէ, այլ ատոմային: Մենք ոչ մի ածուխ էլ չպիտի վերցնենք: Ատոմային սառցահատի համար ածուխից միլիոնավոր անգամ քիչ է վառելանյութ պահանջվում, իսկ մեքենան ավելի ուժեղ ու ամուր է:

— Դա ինչի՞ց է:

— Նրանից, որ ածուխ չի վերցնում: Դու գիտե՞ս, թե ածուխը ինչքան ծանր է: Դրա փոխարեն կարելի է սառցահատը ավելի մեծ սարքել և պատերն էլ ավելի հաստ... Տուր շշակը: Առա՜ջ:

Կոլյան խմորխառնիչով խփեց սափորին: Պետյան շշակի ձգանը քաշեց, հետո սկսեց բաց թողնել գոլորշին: Նա չգիտեր, թե ատոմային սառցահատը ինչպես է գոլորշի բաց թողնում, և դրա համար էլ բարձր փշշացնում էր:

## «ՀԱՎԵՐԺԱԿԱՆ» ՄԱՐՏԿՈՑ



Արդյո՞ք հնարավոր չէ ատոմային էներգիան անմիջապես վերածել էլեկտրականի:

Ատոմային ռեակտորի աշխատանքից հետո մնացած «խարամի» մեջ, ուրիշ շատ ռադիոակտիվ նյութերի հետ միասին, հայտնաբերված է ռադիոակտիվ ստրոնցիա: Այս իզոտոպի և կիսահաղորդիչի թիթեղներից կարելի է պատրաստել էլեկտրական մարտկոց: Նյութերի մասնիկների հոսանքը, ստրոնցիայի թիթեղներից թափանցելով կիսահաղորդիչի թիթեղների մեջ, առաջ է բերում էլեկտրոնների հաստատուն հոսանք՝ էլեկտրականություն: Այդպիսի մարտկոցը կարող է գործել 25 տարի: Նկարում տրված է ատոմային մարտկոցի մեկ էլեմենտի գծագիրը:

Հզոր և մեծ մեքենաների համար, իհարկե, կպահանջվեն ավելի հզոր ատոմային մարտկոցներ:



Ատոմային սառցահատը արագ առաջ գնաց, և շուտով երևացին առաջին սառույցները:

— Պտտիր, — տաքացավ Կոլյան, — ջարդուփշուր արա սառույցները: Առա՜ջ:

Նա նորից զնգացնում էր սափորը, իսկ Պետյան գոչում էր.

— Թը՛խկ-թըը՛խկ, թը՛խկ-թըը՛խկ: Աջ կողմում արջ է երևում, — զեկուցեց նա:

Նրանց աջ կողմում, իրոք որ, արջ էր երևում: Նա կանգնել էր գրքակալի վրա: Դա հախճապակյա արձանիկ էր, որ Կոլյայի ծննդյան օրվա առթիվ մայրն էր գնել:

— Վառե՛լ լուսարձակը, — հրահանգեց Կոլյան, — պոլու՜նդրա*, սկսվում է սառցակալումը:

— Հիմա կճեղքենք, — արձագանքեց Պետյան, վերցնելով ազատ մնացած խմորխառնիչը ու լինգի նման վեր բարձրացրեց, — մեկ, երկու, հո՛պ:

— Ինչպես տեսնում եմ, դու երբեք ատոմային սառցահատով չես նավարկել: Այնտեղ տաք ջուրը խողովակներով բաց են թողնում, և սառցահատը հարթուկի նման տաքանում ու հալեցնում է ամբողջ սառույցը:

— Կա՛, բաց թողնել գոլորշին, — ասաց Պետյան թշշացրեց և սկսեց շարժել ձեռքերը, իբր թե ծո-



## ԱՏՈՄԱՅԻՆ ՍԱՌՑԱՀԱՏ

Սովետական նավաշինարաններից մեկում կառուցվում է ատոմային սառցահատ: Արկտիկական այդ դյուցազնի երկարությունը 134 մետր է, լայնությունը՝ 27 մետրից մի փոքր ավելի, ջրածավալը՝ 16 հազար տոննա: Թիավարող պտուտակները աշխատեցնելու համար սառցահատի վրա դրվելու են շարժիչներ, որոնց ընդհանուր հզորությունը հավասար կլինի 44 հազար ձիաուժի: Բայց սրանով չէ այդ սքանչելի նավի գլխավոր արժանիքը: Երբ լավագույն դիզելային սառցահատները վերցնում են մեկ ամսվա վառելիքի պաշար և կրում են 3 հազար տոննայից ավելի, ապա նոր սառցահատը էներգիայով ապահովված կլինի 2—3 տարի: Դրա համար սառցահատն ունենալու է իր ատոմային էլեկտրակայանը, 200 հազար ձիաուժ ջերմային հզորությամբ: 18 մղոն 1 ժամ արագության դեպքում, սառցահատը 24 ժամվա ընթացքում կծախսի 200 գրամից էլ պակաս ուրան:

Հեռու չէ այն օրը, երբ այդ հզոր սառցահատը հանդիսավոր կերպով ջուր կիջեցվի:



* Պոլունդրա — ծովայինների մեջ տարածված բացականչություն, որ նշանակում է. «զգուշացե՛ք»:

րակն է բաց թողնում:

Նրանք բարեհաջող ավարտեցին ռեյսը:

— Արի մի տեղ էլ գնանք,— առաջարկեց Պետյան.

— Ես արդեն մտածել եմ: Միայն թե...— Կոլյան կասկածանքով նայեց Պետյային,— դու գիտե՞ս ինչ բան է կիսահաղորդիչը:— Եվ նրա դեմքին բացասական պատասխան կարդալուց հետո ավելացրեց.

— Ահա այս հաղորդալարը,— Կոլյան ցույց տվեց լուսարձակի էլեկտրալարը,— սա հաղորդիչ է: Այն ամենը, ինչ էլեկտրական հոսանք է հաղորդում, հաղորդիչ է, իսկ կիսահաղորդիչը...

— Հաղորդալարի կե՞սը,- բացականչեց Պետյան:— Քանի որ էլեկտրալարը բաղկացած է իրար հյուսված երկու հաղորդիչ լարից, ուրեմն մի լարը կլինի կիսահաղորդիչ: Նա գոհ էր իր բացատրությունից: Բայց Կոլյան լռջացավ: Նա կյանքում առաջին անգամ դեմ առավ մի խնդրի, որը կարելի կլիներ անվանել՝ մանկավարժական: Մինչ այդ, նա երբեք չէր պատկերացնում, թե ինչքան դժվար է ուսուցչի գործը:

— Չէ՛, էդպես չէ,— ասաց նա, նեղանալով մեկ իր, մեկ Պետյայի վրա, որը կապույտ աչքերով դյուրահավատորեն նայում էր իրեն:— Քեզ ինչպե՞ս ավելի լավ բացատրեմ: Ահա, տեսնու՞մ ես,— Կոլյան ցույց տվեց պատին խփած հախճապակյա սպիտակ անվակը:— Սա մեկուսիչ է՝ էլեկտրականություն չի հաղորդում. այսինքն հաղորդիչ չէ: Հասկացա՞ր:

Պետյան դրականորեն շարժեց գլուխը:

— Ա՛յ էդպես: Բայց կան իրեր, որ ոչ այս են, ոչ այն: Կիսով չափ հաղորդիչ են, կիսով չափ՝ ոչ: Դրանք էլ հենց կիսահաղորդիչներ են:

## «ԷԼԵԿՏՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՊԼԱՆՏԱՑԻԱ»

Տոթակեզ անապատի մեկ քառակուսի մետր վրա արևը թափում է մինչև մեկ կիլովատ էներգիա, իսկ ճարյուր հեկտարի վրա՝ մեկ միլիոն կիլովատ: Արևի էներգիան կիսահաղորդիչե ջերմաէլեմենտի օգնությամբ կարելի է վերածել էլեկտրական էներգիայի: Այդպիսի էլեմենտի մարտկոցների մի կողմը տաքացվում է արևի լույսով, իսկ մյուսը՝ հովացվում հատուկ խողովակների միջով անցնող օդի հոսանքով: Ջերմաստիճանի այդ տարբերությունից մարտկոցներում առաջանում է էլեկտրական հոսանք: Այժմ ջերմաէլեմենտները կարող են էլեկտրականության վերածել արևի էներգիայի 10 տոկոսը: Տասը քառակուսի մետր տարածությունից ստացվող էներգիան կարող է աշխատեցնել մեկ ձիաուժից ավելի հզորություն ունեցող շարժիչ:

Կիսահաղորդիչային «էլեկտրականության պլանտացիաները» ապագայում լայն տարածում կգտնեն: Անապատները կդառնան արեգակնային էլեկտրակայաններ:






— Իսկ ինչու՞,— հանկարծ հարց տվեց Պետյան:

— Ինչպե՞ս թե ինչու,— շփոթվեց Կոլյան: Նրա դատողության ամբողջ ընթացքը խիստ էր, ինչպես երկրաչափական թեորեմների ապացույցները: Բայց այդ հարցը նրան պատին դեմ արեց:

— Ինչու՞ են նրանք այդպես:

— Ի՞նչ է նշանակում՝ ինչու,— սկսեց բորբոքվել Կոլյան:— Դե, նրանք այդպես են կառուցված: Այ, ասենք՝ դու ինչու՞ ես փոքր:

— Ես կմեծանամ:

Կոլյան անմիջապես զգաց, որ ինքը անհաջող օրինակ բերեց:

— Իսկ ինչու՞ հաստ ես:

— Ես հաստ չեմ,— նեղացավ Պետյան,— մկանոտ եմ: Կառուցվածքս է այդպես:

— Դե կիսահաղորդիչների կառուցվածքն էլ այնպես է:

— Սկզբից թող այդպես ասեիր, էլի, թե չէ՝ փոքր, հաստ... պա՛հ, մեծ մարդուս նայեք: Ավելի լավ կլինի ասես, թե ուր ենք գնում:

— Ա ն ա պ ա տ: Մենք էլեկտրական նավակի մեջ նստած՝ կլողանք ջրանցքով: Իսկ էլեկտրական հոսանքը կվերցնենք արևից:

— Ինչպե՞ս կվերցնես,— զարմացավ Պետյան:

— Բա ինչու՞ համար են կիսահաղորդիչները:

— Դու, ախպեր ջան, արդեն չափը անցկացնում ես, ես փո՞քր եմ, ինչ է: Դու կիսահաղորդիչները ինչպե՞ս կհասցնես արևին: Մինչև արևը գիտե՞ս, ինչքան կլինի:

— Արևին մենք ոչինչ էլ չենք հասցնի: Ինքը մեզ կհասցնի իր ճառագայթները, որոնք կիսահաղորդիչների օգնությամբ կարելի է վերածել էլեկտրականության: Հիմա պա՞րզ է:

— Այո՛,—վճռական պատասխանեց Պետյան:

— Այդ դեպքում պատկերացրու, որ անապատում ենք, և շատ շոգ է: Մեր շուրջը հսկայական գըմբեթներ են կանգնած, ինչպես աստղադիտարաններինն է, միայն թե հակառակը:

— Ինչպե՞ս թե հակառակը:

— Բերանով դեպի վերև: Գմբեթները որսում են արևի ճառագայթները, որոնք ընկնում են կիսահաղորդիչների էլեմենտների մեջ և վերածվում էլեկտրականության: Գմբեթները արևածաղկի պես միշտ արևի կողմն են դառնում: Ջրանցքի երկայնքով լարեր են ձգվում, ինչպես հիմա տրոլեյբուսների վրա կա: Իսկ ջրանցքով երթևեկում են ջրային տրոլեյբուսները՝ էլեկտրանավերը:

— Բայց էդպես կլինի՞:

— Իսկ ինչո՞ւ չանել: Ա՛յ, երբ ես ու դու մեծանանք՝ ինքներս կանենք: Բացի այդ, կարելի է նաև...

Բայց այդ ժամանակ սենյակ մտավ Կոլյայի մայրը: Նա ձեռքերը խփեց իրար և ասաց.

— Ամա՜ն, էդ ի՞նչ եք արել:

— Ճանապարհորդություն ենք կատարել,— ասաց Պետյան,—սա «ժամանակի մեքենա է»:

— Դե լավ,—չվիճեց մայրը,—թեյ խմելու ժամանակն է: Սեղանը դրեք էնպես, ինչպես պետք է: Ջչարդեք մսաղացը:

Կոլյան ու Պետյան իրար նայեցին, ապա խորը շունչ քաշելով, գործի անցան:



## Մրջյունն ու թիթեռը

ՀՈԲՈՍ ԱՊԵՐ

*Աշխատասեր մի ծեր մրջյուն*
*Հասկը առած գալիս էր տուն:*
*Ծաղկի վրա հանգիստ նստած*
*Թիթեռնիկը նրան ասաց.*
*—Որ կողմ նայես, բերք է անծիր,*
*Կեր, քեզ համար հանգիստ պառկիր,*
*Էլ ինչո՞ւ ես շոգ կրակին*
*Տանջվում իզուր բեռան տակին...*
*—Ես քեզ նման անհոգ հո չեմ,*
*Որ ողջ օրը պարեմ, թռչեմ,*
*Ճիշտ է, թեև կչարչարվեմ,*
*Բայց ձմեռը ես լավ կապրեմ:*

*Ասաց այսպես մեր մրջյունը,*
*Հասկը քաշեց տարավ բույնը:*




Նկ. Վ. Կաժոյանի

Վ. Վարդանյան

Մի չար ուլ կար
Անունը Դան,
Թափառում էր
Անգործ, անբան։
Թե որ տանն էլ
Մի օր մնար,
Տան իրերն էր
Խառնում իրար.
Ամբողջ օրը
Տրտինգ տալիս,
Ոչ մի բանի
Պետք չէր գալիս։

Մի օր մայրը,
Խիստ զայրացին,
Նախատեց իր
Չար զավակին։
Մոր խոսքերից
Սաստիկ հուզված,
Չար ուլիկը
Իր մորն ասաց.
—Ի՞նչ վատ գործ եմ
Կատարել ես,
Որ ինձ այդպես
Նախատում ես։
—Նրա համար,—
Ասաց մայրը,—
Տես, հիվանդ է
Քո այծ հայրը,
Ժամանակից

Շուտ ծերացել,
Քո դարդից է
Հիվանդացել...
Դու պետք է որ
Կողքին նստես,
Ջերմ խոսքերով
Մխիթարես,
Այ, ասենք թե
Մի գիրք կարդաս,
Կամ մի բաժակ
Սառը ջուր տաս...
—Ահա թե ինչ,—
Ասաց ուլը,
Շուտ վեր կացավ,
Առավ դույլը,
Գնաց աղբյուր,
Պաղ ջուր բերեց,
Հիվանդ հորը
Հյուրասիրեց։
Երբ ջուր խմեց
Այծ հայրիկը,
Ասաց.—Ապրի՛
Իմ բալիկը...



## Մեզ հետ էր Արևը

Մենք գնացինք ձուկ բռնելու,
Արևն էլ մեզ հետ եկավ.
Մտանք գետը՝ լողանալու,
Նա էլ գետի մեջ մտավ...

Երբ լողացանք ու թարմացանք,
Խաղացինք զով պարտեզում,
Պարտեզում էլ՝ այ քեզ զարմանք,
Նույն արևն էր մեզ ժպտում։

Այնտեղից էլ ուրախ զվարթ
Ցուտրոլի դաշտ գնացինք.
Այստեղ նույնպես նրան տեսանք,
Շողերի տակ խաղացինք։

Ջա՜ն, վառ արև, միշտ մեզ հետ ես,
Ուղեկիցն ես մեր կյանքի.
Մենք անսահման սիրում ենք քեզ,
Դու լույս աղբյուր բերկրանքի։




## ՀԱՅԿԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԵՔԻԱԹՆԵՐ

«Լինում է, չի լինում մի թագավոր: Էս թագավորի երկրում մի գիժ կնիկ է լինում. ունենում է երեք տղա. նրանցից մեկը՝ ռանչպար էր, մյուսը՝ այգեպան, մեկելը՝ ջուլհակ: Մի տարի էս թագավորի երկիրը սով է ընկնում. սով, էն տեսակ սով, որ էլ ասել չի լինի՝ մի կտոր հացի համար հազար գլուխ էին ջարդում, էն էլ ձեռ չէր ընկնում»:

Լինում է, չի լինում...

Երկարում է գիշերը, վառվում է կրակը վառարանում, ձգվում է հեքիաթը... Բորբոքվում է երեխաների հետաքրքրությունը... Ի՞նչ է լինելու... ի՞նչ են անելու եղբայրները...

Եվ երբ վերջանում է հեքիաթը, երեխաները հանգստացած շունչ են քաշում, նրանք հիանում են եղբայրների հնարագիտության վրա...

«Հայկական ժողովրդական հեքիաթները» կարդալիս դուք էլ կիմանաք երեք եղբոր հնարագիտության մասին: Մի ուրիշ անգամ, «Կախարդական խնձորում» կիջնեք հեքիաթի մութ աշխարհը, կտեսնեք, թե ինչպես են քաջերը կռվում չար դևերի դեմ, դուրս գալիս լույս աշխարհ և հասնում երջանկության:

Երջանկություն... Ժողովուրդը վաղուց, շատ վաղուց է երազել




երջանկության, լավ օրերի ու կյանքի մասին: Դրա համար էլ դուրս են եկել կռվելու նրա սիրելի հերոսները: Այդ հերոսների մասին, կախարդների ու դևերի դեմ նրանց տարած հաղթանակի մասին են պատմել մեր իմաստուն հեքիաթասացները:

Ինչքա՜ն լավ է «Կարմիր կովի հեքիաթը»: Մեռնում է նախրչու կինը: Նրա երեխաները որբ են մնում: Խորթ մայրը նեղում է երեխաներին: Բայց նակառակի պես ինչքան էլ դաժան է վարվում խորթ մայրը, ինչ էլ անում է, որ նրանց վրա արև չծագի, երեխաների բախտը բերում է, նրանց օգնում է կարմիր կովը: Որբերը երջանկանում են: Իսկ խորթ մայրը ու նրա աղջիկը պատժվում են: Չարը պատժվում է, բարին հաղթում: Մի՞ թե այդպես չի լինում, երբ մի ուրիշ թագավոր ուզում է կախել իր ծառաներին: Իսկ գիտե՞ք, թե ինչու: Նա երեք հարց է առաջարկում նրանց: Ծառաները մտածում, մտածում, չեն կարողանում պատասխանել: Թագավորը հենց այն է, պետք է պատժեր նրանց, երբ հայտնվում է մի նամփորդ, պատասխանում նրա հարցերին, պատժում անօրեն թագավորին:



Ուրիշ շատ հեքիաթներ էլ կան գրքում, բոլորի մասին պետք չի պատմել, ավելի լավ է ինքներդ կարդաք այդ գիրքը, որ կազմել է գրականագետ Արտաշես Նազինյանը: Գիրքը լավ ձևավորված է ժողովրդական նկարիչ Հակոբ Կոջոյանի կողմից:



«Այս գրքում պատմվում է այն մասին, թե ինչպես էին ապրում մարդիկ աշխարհի ամենամեծ ստրկատիրական պետություններից մեկում՝ Եգիպտոսում» — այսպես է սկսվում «Եգիպտացի տղայի օրը» գիրքը: Դա պատմում է մեր թվականությունից դեռ շատ ու շատ դարեր առաջ ապրող եգիպտացի տղայի մասին: Այդ տղայի անունը Սետի էր, նա դպրոցական էր: Առավոտը վաղ մայրիկը արթնացնում էր փոքրիկ Սետիին, որ նա գնա դպրոց: Սետին ծուլանում էր, շրջվում անկողնու մեջ, նորից քնում, մայրիկը նորից էր կանչում, հիշեցնելով, որ եթե Սետին ուշանա, ուսուցչի մտրակի համը կտեսնի։ Այս անգամ արդեն Սետին վեր էր թռչում տեղից, արագ հագնվում, հավաքում իր գրելու պարագաները ու նախաճաշը և վազում դպրոց:

Եթե չհաշվենք ուսուցչի մտրակի պատմությունը, սիրելի ընթերցող, դու կասես, որ սա շատ նման է քո առօրյային և ամենևին էլ հետաքրքիր չէ: Բայց հետաքրքիրը հենց այդտեղից է սկսվում: Արի նայենք Սետիի գրքերն ու տետրերը, տեսնենք, թե դրանք որքանով են նման քո ունեցածին: Սետին վերցրել էր եղեգնի փայտիկներ և մի փոքրիկ տախտակ, որի վրա փոսիկներ էին արված ներկերի համար: Այդ փայտիկները նրա գրիչներն էին: Փայտիկները նա դնում էր գրչամանի մեջ և բարակ պարանով ամուր կապում տախտակին: Նա վերցնում էր նաև ջրով լի մի սափոր, որպեսզի դպրոցում այդ ջրով բացի ներկերը: Դպրոցում նա ուներ իր ներկերը և կավե խեցիներ: Փոքրիկ տախտակի փոսիկների մեջ Սետին բացում էր կարմիր և սև ներկերը, եղեգնի փայտիկը թաթախում ներկի մեջ և կավե խեցու վրա գրում: Այդ այնքան ժամանակ, քանի դեռ նա անվարժ էր գրում, իսկ երբ Սետին սովորեց գեղեցիկ և համաչափ գրել, ստացավ իր առաջին պապիրուսը: Այնուհետև Սետին պետք է գրեր պապիրուսի վրա: Բայց այս ի՞նչ է, Սետին նկատում է, որ իր առաջին պապիրուսը այնքան էլ մաքուր չէ, նրա վրա գրերի հետքեր են երևում: Դա նշանակում է, որ պապիրուսը այնքան էլ հեշտ չի ձեռք բերվում: Դրա համար էլ մի անգամ գրածը ջնջել են, որպեսզի պապիրուսը նորից օգտագործեն: Հին եգիպտացիք պապիրուսը պատրաստում էին Նեղոսի ափերին առատորեն աճող եղեգներից: Իսկ դա երկար, շատ երկար աշխատանք էր պահանջում: Սետիի գրավորի տեքստը հետաքրքիր էր, նա կարդաց սկիզբը. «Նավը խորտակվեց, նրա վրա եղածներից ոչ ոք չմնաց: Ծովի ալիքն ինձ գցեց կղզի: Երեք օր ես այնտեղ մենակ անցկացրի: Իմ ընկերը միայն սիրտս






էր: Ես քնեցի ծառի ստվերում» և այլն ու սկսեց արտագրել: Հաջորդ դասը թվաբանություն էր: Սետին ազատ կարողանում էր գումարել, հանել, բաժանել, և բազմապատկել, խնդիրներ վճռել: Բայց նրա գրած թվանշանները բոլորովին տարբեր էին մեր թվանշաններից: Նա միավորները գրում էր փոքրիկ ձողիկների նման տասնավորները՝ պարանի կտորի կամ մեր «ո» տառի նման, միայն մի քիչ ավելի նիհարիկ, հարյուրավորները՝ ոլորած պարանի, հազարավորները՝ նահճարույսի նըման, տասհազարավորները՝ մատների նման, հարյուր հազարավորները՝ շերեփուկի նման, միլիոնը՝ մարդու նման, որը այնքան մեծ թվից զարմացած՝ ձեռքերը վեր է բարձրացրել:

Դասերից հետո Սետին գնում է խաղալու իր ընկերների հետ՝ նա նավակով զբոսնում է Նեղոսի վրա, իսկ երեկոյան իր ավագ եղբոր՝ Նախտի հետ գնում է «աստղադիտարան», այնտեղ ծանոթանում է ջրային ժամացույցի և աստղերը դիտելու այլ հարմարանքների հետ։

Սիրելի ընթերցող, քեզ, իհարկե, կհետաքրքրի, թե այդ ինչպես են հիմա կարողանում որոշել մեր թվարկությունից շատ ու շատ տարիներ առաջ ապրող մարդկանց կենցաղն ու գիտելիքները:

Այսպիսի դեպքում մարդկանց միշտ էլ օգնել են պեղումները: Պեղումների միջոցով հայտնաբերվում են անցյալի բնակարանների, օգտագործված իրերի, ձեռագրերի մնացորդներ: Այդ գտնված իրերն ու ձեռագրերը մշակելուց հետո, ուսումնասիրում են գիտնականներն ու պատմաբանները և դրանց միջոցով պատկերացում կազմում այն ժամանակվա մարդկանց կենցաղի, կուլտուրայի ու զարգացման մակարդակի մասին։

Կարդա «Եգիպտացի տղայի օրը» գիրքը և դու լրիվ կպատկերացնես ստրկատիրական Եգիպտոսի կյանքն ու կենցաղը:

Ա. ՂՈՒԿԱՍՅԱՆ

# ՓՈՔՐԻԿ ԿԻՆՈՅՈՒՄ

Ա. ԴԱՐԲՆԻ

Նկ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ



Պապը, տատը և թոռնիկը,
Փոքրիկ կատուն և շնիկը,
Թախտին բազմած,
Մի շարք կազմած,
Մեկ նայում են դեմի պատին,
Մեկ էլ՝ փոքրիկ ապարատին:
Գիտե՞ք ով է մեխանիկը—
Կինոսիրող Վահանիկը:
Պապը հազաց,
Մաքրեց բուկը.

—Ի՞նչ կինո է...
—«Պույ-պույ մուկը»,—
Ծիծաղելի կինո-նկար...
...Ահա մի մուկ, պոչը՝ երկար:
Մեկ էլ փիսոն թախտից ցատկեց
Եվ էկրանին թաթով զարկեց:
—Վա՜յ, ի՞նչ արավ մլավանը.
Պատից պոկեց նա սավանը:
Մո՞ւկ ես որսում, հիմար կատու:
Սա կինո է: Չգիտե՞ս դու...





# ԻՄ ՔՈԹՈԹԸ

ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ

Իմ Քոթոթն առաջ իսկի էլ Քոթոթ չէր, միայն շուն էր, որ կար։ Անունը ես դրի։ Հայրիկը գնացել էր քեռոնց տուն, ետ գալիս՝ քեռին մի շան ձագ էր տվել, թե՝ տար Քաջիկին։ Քաջիկը ես եմ։ Հայրիկն էլ փաթաթել էր վերարկուի փեշի մեջ ու բերել։

Շնիկը բրդոտ էր, սև, միայն ճակատին մի պստլիկ, սպիտակ խալ ուներ։ Կանգնել չորս տոտիկների վրա ու դողում էր։ Այնպես մեղք էր... Ականջներն էլ էին դողում՝ մեծ-մեծ, մեկը վեր ցցված, մյուսը կախ ընկած։

Հայրիկն ասաց, որ աչքերը նոր է բացել։ Ո՞նց թե։ Պարզվեց, որ շան ձագերը կույր են ծնվում։ Հո բոլորովին կույր չէ.էնպես, մի քիչ... Մի քանի օր անցնում է, նոր աչքերը բացվում են։ Այ քեզ բա՜ն։ Կատվի ձագերն էլ էդպես են ծնվում։ Հայրիկն ասաց։ Հետաքրքիր է։ Մեր Մուռանը որ ձագեր բերի, պիտի գնամ նայեմ։

Հայրիկը շնիկին ինձ տալով ասաց.

— Դե, վերցրու։ Բայց տես, հա՛, լավ մտիկ կտաս, սոված չթողնես։

— Չեմ թողնի,— ասում եմ։— Իսկ անունն ի՞նչ է։

— Փոքրիկ է, դեռ անուն չունի։

— Ի՞նչ եմ անում առանց անունի... Ես առանց անունի քոթոթ չեմ ուզում։

— Ա՜խ, հա, լավ միտս գցեցիր։ Ո՞նց էի մոռացել։ Անունը հենց Քոթոթ է։

— Չե՞ս խաբում։

— Չէ, ճիշտ Քոթոթ է, որ կա։

— Որ էդպես է,— ասում եմ,— կվերցնեմ։

Քոթոթին գրկեցի ու դուրս պրծա։ Տարա, ամբարի մոտ մի թախտ կա, էդ թախտի ոտից թոկի կտորով կապեցի, որ չփախչի։ Աղբանոցից մի կոտրած կժի տակ գտա, վազեցի մայրիկի մոտ։

— Մայրիկ,— ասում եմ,— մի քիչ կաթ տաս, իմ շունը սոված է։ Հայրիկն ասաց, որ լավ մտիկ տամ։ Անունը Քոթոթ է։

— Ընը՛, հենց քո Քոթոթն էր պակաս,— բարկացավ մայրիկը։

Մայրիկը միշտ էդպես է. կբարկանա, հետո էլ ուզածդ կանի։

— Ո՞ւր է, աման բերե՞լ ես...

— Հրես։

— Էդ կաթի համար, բա ջրի՞...

— Ջրի աման չկա։

— Էդ է, հա՛... Բա առանց ջրի ո՞նց կա-

# Սաթիկն ու բադիկը

Ժ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

Լավ ընկերներ են մեր ժիր Սաթիկը
Եվ կարմրատոտիկ նրա բադիկը։
Երբ մեր Սաթիկը դպրոց է գնում,
Բադիկը՝ ղա՜—ղա՜, ճամփա է դնում։
Երբ որ դպրոցից նա տուն է գալիս,
Բադիկը ղա՜—ղա՜, բարև է տալիս։
Իսկ երբ Սաթիկը դաս է պատրաստում,
Բադը լռում է, անկյունում նստում։
Լավ ընկերներ են մեր ժիր Սաթիկը
Եվ կարմրատոտիկ նրա բադիկը։

րելի է։ Ուզում ես ծարավ սպանե՞ս էդ խեղճ շունչ արարածին։

— Շունչ արարած չի,— ասում եմ,— շուն է, անունն էլ՝ Քոթոթ։

— Մեկ է, առանց ջրի չի կարելի։ Հրեն բուֆետում մի ճաքած ափսե կա, վեր առ։ Սպասիր, սպասիր, ինքս կտամ, թե չէ, մեկ էլ տեսար՝ ամանները ցած թափեցիր։

Ու մայրիկը ճաքած ամանը հանեց բուֆետից, մեջը կաթ լցրեց, տվեց ինձ։

Քոթոթը հանգիստ նստել էր տակը գցած փալասի կտորին։ Երբ կաթը առաջը դրի, դունչը կամաց մոտեցրեց, հոտոտեց, լեզուն արագ կպցրեց կաթին ու ներս տարավ։ Հազիվ նկատեցի՝ կարմիր-կարմիր էր։ Հետո արագ վրա պրծավ ու ագահությամբ լակեց — վերջացրեց ամբողջ կաթը։

Ձեռքս կամաց, շատ կամաց քսեցի տռզած փորին,— ինչպես տաք էր,— ու ասացի.

— Քոթոթ ջան...

Նա մտիկ տվեց ինձ ու սկսեց պոչի ծայրը խաղացնել։

Ճանաչեց...






ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ    Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

(Գիտա-ֆանտաստիկական պատմվածք)

*Սալվատորեն շփոթված ինձ նայեց։*

*— Երբ երգում եմ,— հուզված ասաց Նարինեն,— ինչ-որ ոգիներ սկսում են ձայնակցել ինձ։ Գետնի տակից ես զգում եմ շրշյուններ։ Իսկ երբ լռում եմ, ամեն ինչ մարում է։*

*Իտալացու շփոթմունքը փոխվեց սարսափի, երբ լսեց ոգիների մասին։*

*— Օ՜, սուրբ Անտոնիո,— ակամայից շշնջացին նրա շրթերը։*

*— Այդ մասին հայտնե՞լ ես պրոֆեսորին,— հարցրեցի ես բժշկուհուն, աշխատելով ավելի հանգիստ ձևանալ։*

*— Այո... Բայց պարզվեց, օդերևութաբան Շլոգերի կատուն ինձ այցելեց։ Տարօրինակ ձայները վերագրվեցին նրան։ Իհարկե, ոչ մի կատու էլ չէր կարող ինձ ձայնակցել։ Գուցե միայն պատրանքնե՞ր են... Արձագանք...*

*Մենք մի փոքր էլ նստեցինք, հետո հրաժեշտ տալով Նարինեին, դուրս եկանք։ Ուրախ երեկոյից հետք անգամ չէր մնացել։*

*Տարօրինակ երևույթը ինձ հանգիստ չէր տալիս։ Արձագա՞նք. ոչ, մի՞թե արձագանքը այդպես լրիվ ու պարզորոշ է լինում։*

*Կրագրողին տուն ուղարկելուց հետո, ես շտապեցի պրոֆեսոր Ստակյանի մոտ։*

5.

*Պրոֆեսորը ինձ հետաքրքրությամբ լսեց, բայց որոշակի պատասխան տալ չկարողացավ։*

*— Մենք դեռ շատ բան չգիտենք Միմասի մասին,— մտածկոտ ասաց նա և դրանով էլ հարցը լուծված համարեց։*

*Անցավ մոտ երեք շաբաթ։*

*Մարչելլո Սալվատորեի հետ ես հաճախ էի լինում բժշկուհու մոտ։ Երբեմն իտալացին ինքն էր վերցնում կիթառը, և Միմասի վրա հնչում էին իտալական գեղեցիկ երգերը։ Ամբողջ օրվա լարված աշխատանքից հետո դա մի կատարյալ հանգիստ էր։*

*Մեր կացարանը աստիճանաբար ընդլայնում էր իր սահմանները։ Հավաքովի տներն ու լաբորատորիաները, որոնք բեռնատար տիեզերական նավերով ստանում էինք երկրից, հերթականությամբ աճում էին հարթավայրում, ավելի ու ավելի մոտենալով մռայլ ու անկենդան ժայռերին։*

*Մենք որոշեցինք գտնել տարօրինակ ձայների առաջացման պատճառները։ Նարինեի երգելու ընթացքում ես թարնվում էի դրսում և ուշադիր աչքի անցկացնում շրջապատը։ Ոչ մի արդյունք։ Ստորերկրյա ձայները շարունակվում էին լավել։ Երգը լռելուն պես՝ դրանք փոխվում էին դոփյունների։*

*Ես մի խիզախ եզրակացության հանգեցի։*

*Որևէ մեկը ականջ է դնում մեզ։ Բայց ո՞վ է այդ մեկը։ Գուցե իսկապե՞ս պրոֆեսոր Ստակյանի ենթադրությունները ճիշտ են։ Գուցե կենդանական աշխարհի երամբշտասեր ներկայացուցիչներից մե՞կն է գաղտագողի մեզ լըսում։ Ես հիշեցի Անտարկտիկայի զարմանալի թռչուններին՝ պինգվիններին,*

Սկիզբը տես «Պիոներ» № 5։

որոնք այնպես են սիրում երաժշտություն, որ գրամոֆոնի ձայն լսելուն պես՝ առանց վախենալու, շրջապատում են նավաստիներին։

... Մարչելլո Սալվատորեն համարյա ամեն օր ինձ առաջարկում էր այցելել Նարինեին։ Երբեմն էլ պատճառաբանելով, որ ցանկանում է մաքուր օդում զբոսնել, դուրս էր գալիս, թողնելով մեզ մենակ։ Սովորաբար նա զբոսնելու էր գնում դեպի կոնաձև սարը, իհարկե, միշտ էլ պատկառելի հեռավորության վրա պահելով իրեն։

Եվ մի օր էլ, նրա դուրս գալուց չէր անցել երեսուն—քառասուն րոպե, երբ հարթավայրից լսվեց մի սարսափելի ճիչ։ Ես նետվեցի դեպի պատուհանը։ Կապտագույն հարթության վրա ես նկատեցի Մարչելլո Սալվատորեի կերպարանքը։ Նա, ինչ—որ բանից խիստ վախեցած, ամբողջ ուժով վազում էր դեպի մեր կացարանը։

Լրագրողի անբնական շարժումները, որ նա կատարում էր վազելու ընթացքում, ենթադրել էին տալիս, որ իտալացին առնվազն խելքը կորցրել է։



Խեղճ Սալվատորե...Եթե նա այդպիսի արագությամբ սլանար վերջին օլիմպիական խաղերի ժամանակ, որոնք տեղի ունեցան Մարսի վրա, ապա անկասկած կգրավեր առաջին տեղը։ Մի քանի րոպե անց նա արդեն կացարանի մոտ էր։ Թափ առնելով, Սալվատորեն թռավ պատուհանից ներս, ընկավ բազկաթոռին ու աչքերը փակեց։

— Սինյոր, ի՞նչ պատահեց ձեզ հետ,—աշխատելով նրան ուշքի բերել, գոչեց Նարինեն։

Իտալացին կարծես համրացել էր։ Նրա ակնոցը ընկել էր դեռ վազելու ժամանակ։ Դեմքին մեռելային գունատություն էր իջել։ Նա համարյա չէր շնչում։ Միայն թույլ, աննշմար զարկերակն էր, որ վկայում էր դեռևս չհեռացած կյանքի մասին։

— Ջանգահարիր Ստակյանին,—խնդրեց Նարինեն և սկսեց ինչ—որ հեղուկ ներարկել անշնչացած լրագրողի մաշկի տակ։

Քիչ հետո ներս մտավ պրոֆեսորը։ Նա չափազանց հուզված էր։

Ներարկումները, արհեստական շնչառությունը, և, վերջապես թթվածնի բարձերը մահվան շեմքից ետ բերեցին Սալվատորեին։ Նրա այտերը աստիճանաբար շառագունեցին, իսկ շրթունքներն սկսեցին շարժվել։

— Ոգ-գի-նե՛րը...գալ-լի՛ս են...

Պրոֆեսորը մեզ նայեց։ Նրա ծերունական, խելացի աչքերում ես զգացի տարօրինակ մի փայլ։

6.

Մոտ տասը րոպե հետո հարթավայրից լսվեց մի հսկա-երգչախմբի ձայն։ Սա արդեն չափազանց էր։ Իսկ Մարչելլո Սալվատորեն լսելով երգեցողության ձայնը՝ նորից ուշաթափվեց։

Երգը աստիճանաբար մոտենում էր։ Շուտով ես սկսեցի զանազանել մեղեդին։

— Կոմիտաս...—ակամայից շշնջացի ես։

Իրոք, անհայտ երգչախումբը մի մարդու պես կատարում էր Նարինեի սիրելի երգը.

Գարուն ա, ձուն ա արել...

Բժշկուհու ձեռքից ապակյա սրվակը ընկնելով, փշուր-փշուր եղավ։ Դարչնագույն հեղուկը տարածվեց հատակին։

Ես դուրս նայեցի։ Արշավախմբի բոլոր անդամները կանգնած էին բակում։ Օդերևութաբանը թավամազ կատվին գրկած, ճգնում էր հավաքվածներին ինչ-որ բան ապացուցել։ Սակայն ոչ ոք նրան չէր լսում. Բոլորը նայում էին կոնաձև սարի կողմը։

Հորիզոնում ես նկատեցի թափառող կրակներ, որոնք աստիճանաբար մոտենում էին։ Իսկ երգը չէր լռում։

Շուտով ես տեսա տարօրինակ արարածների։ Նրանք շատ փոքր էին, հազիվ կես մետր հասակով։

— Հոմոբրևիսներ,—գոչեց Նարինեն և անմիջապես թարգմանեց,—թզուկներ։

Արարածները համարձակ մեզ էին մոտենում։ Նրանք քայլում էին ետևի ոտների վրա։ Իսկ ձեռքերին բռնել էին ոմանք՝ ջահեր, ոմանք՝ երկար ձողեր, որոնց ծայրին ամրացված էր Սատուրնի և նրա օղակի մոդելը։

Հոմոբրևիսները կանգնեցին մեր կացարանից մոտ հիսուն մետր հեռավորության վրա։ Երգը լռեց։ Հարթավայրը նորից թաղվեց սովորական հանդիսավոր լռության մեջ։

Խմբից անջատվեց առաջնորդը և մանրիկ քայլերով մոտեցավ մեզ։ Կարճլիկ մարմնի վրա նա հագել էր երկար փեշերով զգեստ։ Ես ուղղակի ապ-

շեցի։ Ինչպե՞ս նա չէր խճճվում լայնափեշ զգեստի մեջ։ Հոմորրևիսը կարծես տիկնիկ լիներ։ Թվում էր, թե նրա մեծ գլուխը ուղղակի հրաշքով է կանգնում բարակ վզի վրա։ Կեռ քիթն ու հաստ, թավ հոնքերը նրա թուշնային կլոր աչքերի հետ այնպիսի ամբողջություն էին կազմում, որ ես ակամայից սարսափեցի։ Առաջնորդը հին ծանոթի պես մոտեցավ ուղիղ պրոֆեսոր Ստակյանին, կանգնեց նրանից մի քանի քայլի վրա ու ձախ ոտքը բարձրացնելով, անծանոթ լեզվով ինչ-որ բան գոչեց։ Հետո նա դարձավ Ստակյանին ու բոլորովին անըսպասելի, ասաց.

— Մենք ընդունել հյուրերին... Սկզբում մենք վախենալ նրանցից... Իսկ ե՛րգը... Երգի միայն բարի մարդ...

Օղերևութաբան Շլուգերի գրկից կատուն վայր ընկավ։ Մենք զարմանքից հոգոց հանեցինք։ Ես ակամայից հիշեցի այն առածը, որ չար մարդիկ երգ չունեն։

Երգը համարձակություն էր տվել Միմասի բնակիչներին, որոնց մենք սկսեցինք անվանել հոմորրևիսներ։ Նրանք մի տարի անընդհատ, իրենց ստորերկրյա քաղաքում թաքնվել էին երկրաբնակներից, գուցե վախենալով ֆիզիկական ոչնչացումից։ Նրանք ստորգետնյա միջանցքներում թաքնվելով, հետևել էին մեր արշավախմբին։ Կարողացել էին սովորել մեր լեզուն։ Նրանք էին ծայնակցել Նարինեի երգին։ Եվ Կոմիտասի հիասքանչ մեղեդին համոզել էր նրանց, որ նման երգ ունեցողը չար հոգի չի ունենա։

Միմասի առեղծվածը կարելի էր լուծված համարել։

Մենք դրացիական հարաբերություններ հաստատեցինք հոմորրևիսների հետ։ Պրոֆեսոր Ստակյանը նոր եռանդով սկսեց բնիկների կենցաղի ուսումնասիրությունը։

Հոմորրևիսները հաճախ էին այցելում մեզ։ Եվ Միմասի գեղեցիկ հարթավայրը, որն այլևս մռայլ ու տխուր չէր թվում, թնդում էր հրաշալի մեղեդիների ծայներից։ Ինչպիսի՜ հարուստ, հուզական երաժշտություն ունեին բնիկները։

— Իսկ ինչպե՞ս համակերպվեց Մարչելլո Սալվատորեն բնիկների գոյության հետ,—կհարցնեն շատերը։

Այդ հարցին կպատասխանի Լա Սկալայի մեներգչուհի Պինա Գրեկոյի մոտ գտնվող մի հետաքրքրական լուսանկար։

Լուսանկարի վրա դուք կտեսնեք Մարչելլո Սալվատորեին, ինձ, Նարինեին և հոմորրևիսների առաջնորդին՝ սեղանի առաջ նստած, հայկական օշարակ խմելիս (տեղին է ասել, որ իտալացին վաղուց էր մոռացել սոդայաջրով վիսկին)։

Լուսանկարի հետևում, եթե գիտեք իտալերեն, դուք կկարդաք հետևյալ մակագրությունը.

«Պինա, ահա իմ բարեկամները, որոնց մասին շատ եմ գրել։

Մեզ մտերմացրել է երգը։

Արեգակնային սիստեմ

ՍԱՏՈՒՐՆ

Միմաս արբանյակ»

Համբույրներով՝

ՄԱՐՉԵԼԼՈ Ս.








## ԳՏՆԵԼ ԿԵՆՏՐՈՆԸ



Բաժանումներ չունեցող գծագրական եռանկյունու և մատիտի օգնությամբ՝ ինչպե՞ս գտնել այդ շրջանագծի կենտրոնը: Մատիտը թույլատրվում է օգտագործել միայն անհրաժեշտ գծեր քաշելու համար:

## ՉՈՐՍ ՄԱՍԻ

45-ը բաժանեցեք չորս մասի այնպես, որ եթե առաջին մասին գումարենք 2, երկրորդից հանենք 2, երրորդը բազմապատկենք 2-ով, իսկ չորրորդը բաժանենք 2-ի, ստանանք հավասար մեծություններ:




## ՀԱՆԴԻՊՈՒՄ ՓՈՂՈՑՈՒՄ

— Բարև, Վարդան, ո՞ւր ես գնում,— հարցրեց Գուրգենը:

— Հորեղբորս տուն:

— Հորեղբայրդ այս փողոցի վրա՞ է ապրում:

— Այո, 25-րդ տանը:

Ի՞նչ եք կարծում այս երկու տղաներից ո՞րն է Վարդանը:



## ԼՈՒՑԿԻՆԵՐԻ ՕԳՆՈՒԹՅԱՄԲ



Լուցկու 9 հատերը դասավորեք այնպես, որ ստացվի 3 քառակուսի և երկու եռանկյունի:

## ԵՐԿՈՒ ԱԳՌԱՎ

Ծառի վրա նստել են երկու ագռավ և նայում են տարբեր կողմեր. մեկը՝ դեպի հարավ՝ իսկ մյուսը՝ հյուսիս:

— Քո ճանկերը կեղտոտ են,— ասում է մեկը:

— Քո կտուցն էլ հողոտ է,— ասում է մյուսը:

Ա՛յ քեզ բան, հակառակ կողմեր են նայում, բայց տեսնում են միմյանց: Ի՞նչումն է գաղտնիքը:

## Ի՞ՆՉ ԵՔ ԿԱՐԾՈՒՄ



Եթե գիշերվա ժամը 12-ին անձրև է գալիս, ապա 72 ժամ հետո արև կլինի՞:

## ՔԱՐՏԵԶԻ ԱՌԱՋ



1. Ո՞ր նեղուցն է իրարից բաժանում՝ 2 ծով, 2 օվկիանոս, 2 թերակղզի, 2 պետություն, 2 աշխարհամաս:

2. Եվրոպայում կան երկու մեծ թերակղզիներ, որոնցից մեկի ափերը ողողում են երկու օվկիանոսի չորս ծովեր, իսկ մյուսինը՝ մեկ օվկիանոսի չորս ծովեր: Ո՞ր թերակղզիներն են դրանք, և ի՞նչ ծովեր են ողողում նրանց ափերը:



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը՝
Նկ. Հ. ՋԱՐԴԱՐՅԱՆԻ



### «ԿԱՐՄԻՐ ԳԼԽԱՐԿԸ»

Սիրելի ընթերցող, հաճախ քո փոքր եղբայրը, քույրը կամ հարևանի երեխաները, որոնք դեռ կարդալ չգիտեն, դիմում են քեզ և խնդրում, որ նրանց համար հետաքրքիր հեքիաթներ պատմես։ Դու, իհարկե, սիրով կատարում ես նրանց ցանկությունը։ Անշուշտ դու կարդացած ու պատմած կլինես նաև «Կարմիր գլխարկը» հայտնի հեքիաթը։

Բայց գիտե՞ս, որ «Կարմիր գլխարկը» կարելի է բեմադրել։ Դա շատ հետաքրքիր կլինի։ Բեմադրելու համար պետք է ընտրել գործող անձեր, նրանց սովորեցնել իրենց դերերը և հետո դիմակներ պատրաստել։

Դիմակներ պատրաստելիս կարելի է օգտվել մեր տպագրած


**Խմբագրական կոլեգիա**

ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս. (խմբագիր), ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՄԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս. (գեղարվեստական խմբագիր), ՕՀԱՆՅԱՆ Ա.։

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки № 41.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*

*ՎՖ 06842, Պատվեր 580, Տիրաժ 5000։ Տպագրական 4,5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 13/VI 1957 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։ Գինը 2 ռ.*












Նկարներից, որ արել է նկարիչ Կ. Մինասյանը։ Ստվարաթղթի
վրա, նախ պետք է արտանկարել դրանք՝ ավելի մեծ չափերով և
ներկել, որից հետո, մկրատով կտրել դիմակները, կողքերից
փոքրիկ անցքեր բաց անել՝ թելով գլխին կապելու համար։

